# Ողջո՜ւյն, 


ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ



Անցան ամռան օրերը բոց,
Եվ մենք ահա նոր ուժ առած,
Գիրկդ ենք գալիս, մեր մա՜յր դպրոց,
Կարոտ սրտով, թևատարած:
Լողացել ենք մենք գետերում,
Սլացել ենք մենք եթերում,
Մագլցել ենք լեռներն ի վեր,
Այնտեղի՜ց ենք արշալույսը մենք ողջունել:
Մենք տեսել ենք ո՜նց է պայթում ամպրոպն ուժգին,
Ո՜նց են բեկվում շանթ ու կայծակ՝ լեռան կրծքին,
Ո՜նց է բարդին երիտասարդ
Ամպ ու ամպրոպ կրծքով ճեղքում,
Իր թևերը պարզում ազատ
Ու հաղթության երգը երգում:
Ու մեր հոգին շնչում է ջերմ հավար հուշով,
Բալեների հյութ ուժով ու աշխույժով:
Բարձրացել ենք, ինչպես նոր ծառն է բարձրանում,
Քաղցրացել ենք, ինչպես պտուղն է քաղցրանում:
Եվ մենք ահա նոր ուժ առած,
Գիրկդ ենք գալիս թևատարած:
Ողջո՜ւյն, դպրո՜ց, մեր թանկագին,
Դու անսպառ լույսի աղբյուր,
Քո ջահերով բոցավառի՜ր դու մեր հոգին,
Մեզ նո՜ր թռիչք ու սլացք տուր:

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ԴՌՆԱՊԱՀ ՔԵՌԻՆ

*ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ*

Էլ տխուր չէ Մուշեղ քեռին,
Նորից զանգ ու դասեր.
Ուզում է նա մանուկներին
Սրտանց մի խոսք ասել,
Բայց հուզմունքից բառ չի գտնում
Ու չի խոսում քեռին,
Մանուկները կրկին նրան
Աղմուկ ու խինդ բերին...
— Հազա՛ր բարով, քեռի՛ Մուշեղ,
Հազա՛ր, հազա՛ր բարով,
Բերել ենք մենք պայծառ հուշեր,
Անցել ձոր ու սարով.
Բերել ենք քեզ հազար ողջույն,
Մեր ծովակից հրաշք,
Գետակներից մեր պաղպաջուն,
Ծաղիկներից հրաշք...
Բերել հազար երգ ու երազ,
Դարձել առո՛ղջ, ուժե՛ղ,
Եվ գիտենք, որ կուրախանաս,
Ընկե՛ր քեռի Մուշեղ...
Լայն կբանաս մեր դպրոցի
Դռները մեր առաջ,
Բալիկներն ենք քո խելացի՝
Մի քիչ երես առած:
Խոսք ենք տալիս, քեռի՛ Մուշեղ,
Վկա՝ հանգիստն ամռան,
Մուլիկներին էլ չհուշել,
Գերազանցիկ դառնալ:
Դառնալ խելոք ու կարգապահ
Եվ մեծերին հարգել,
Կտրել բարձունք ու ճանապարհ,
Անցնել ամեն արգելք:—
Ծիծաղում է Մուշեղ քեռին,
Քեֆին քեֆ չի հասնի.
— Ուրախությունս ետ բերին
Բալիկներն իմ ազնիվ:
Մեծացել են ու բոյ քաշել...—
Խորհում է նա լռին,
Ուրախ է ձեզ համար, քաջե՛ր,
Ձեր դռնապահ քեռին:
— Դե՛հ, նե՛րս եկեք, ի՛մ բալիկներ,
Գժեր՝ երես առած,
Մուշեղ քեռին պատրաստ է միշտ
Դուռ բացել ձեր առաջ...



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

## ՀՆՉՈՒՄ Է ՆՈՐԻՑ ԶԱՆԳԸ ԴՊՐՈՑԻ...

Դպրոցը կրկին իր դռներն է բացել բազմահազար դպրոցականների առջև: Հազարավոր փոքրիկներ էլ առաջին անգամ այս տարվա սեպտեմբերի 1-ից ոտք դրին դպրոց, բացեցին իրենց առաջին գիրքը՝ այբբենարանը:

Մարդու կյանքում կան պահեր ու դեպքեր, որ երբեք չեն մոռացվում: Դրանցից է հանդիպումը այբբենարանի հետ: Մեր ընթերցողներին անշուշտ կհետաքրքրի հայ այբբենարանի պատմությունը՝ ե՞րբ է ստեղծվել, ինչպե՞ս, ո՞ւմ կողմից և ի՞նչ փոփոխություններ է կրել, մինչև մեր օրերում ընդունել է բոլորին այնքան ծանոթ ու հարազատ տեսքը:



# ՀԱՅ ԱՅԲԲԵՆԱՐԱՆԸ

Նկ. ԱԼԲԵՐՏ ԿԱՐԱԳՅԱՆԻ

*Մատենադարանում պահպանվում է հայերեն ամենահին ձեռագիր այբբենարանը, որի հեղինակն է տասնհինգերորդ դարի նշանավոր մանկավարժ Թովմա Մեծոփեցին: Չնայած ոչ մի վկայություն չի մնացել, բայց կարելի է համոզված ասել, որ մեր առաջին այբբենարանը կազմել է Մեսրոպ Մաշտոցը, տառերի գյուտից անմիջապես հետո, որպեսզի գրաճանաչություն սովորեցնի ժողովրդին: Սկզբնական շրջանում աշակերտները թղթի և մագաղաթի փոխարեն օգտագործել են թիակի տեսք ունեցող, մոմի բարակ շերտով երեսապատված հարթ տախտակներ, իսկ որպես գրիչ են ծառայել մի ծայրը սուր, մյուս ծայրը բութ, փայտի կամ երկաթի ձողիկները: Թիակաձև հարմարանքը կոչվել է պնակիտ և չկորչելու համար՝ սովորողը այն պահել է իր պարանոցից կախ: Ձողի սուր ծայրով պնակիտի վրա գրել են տառերը, իսկ բութ ծայրով՝ ջնջել:*

*Մինչև Մեծոփեցին այբբենարանի հեղինակ կարող էր լինել Անանիա Շիրակացին, որն ուներ իր դպրոցը կամ միջին դարի որևէ անվանի գիտնական, քանի որ այդ ժամանակ Հայաստանում բարձր զարգացման էր հասել կրթությունը: Գլաձորում և Տաթևում գործում էին հռչակավոր համալսարանները: Բայց մենք միայն ենթադրություններ կարող ենք անել, որովհետև մեզ որևէ փաստ չի հասել: Մեր երկիրն ասպատակող զավթիչները հայատառ հրաշալի մատյաններից խարույկներ էին սարքում կամ իրենց հետ ավար տանում: Հավանաբար, շատ այբբենարաններ էլ այդպես ոչնչացվել են: Այնուհանդերձ, անվնաս է մնացել ևս երկու ձեռագիր այբբենարան. մեկը կոչվում է Անանուն և ընդօրինակվել է 1585—89 թթ., Եվդոկիա քաղաքում, իսկ մյուսը 1692 թ. Լվով քաղաքում գրված լեհահայերի այբբենարանն է:*

*Առաջին տպագիր այբբենարանը լույս է ընծայել Աբգար դպիր Թոխատեցին 1567 թ., Կոստանդինապոլսում: Բայց դրանից առաջ իտալացի Լորենցո դ'Անանիան իր գրքում հայտնում է, որ տեսել է Վենետիկում տպագրված հայերեն այբբենարան: Օտար երկրներ պանդխտած հայերը դպրոցներ էին բացում, մայրենի լեզվով դասագրքեր կազմում, որպեսզի մանուկները չմոռանան իրենց լեզուն: Ահա թե ինչու այդքան բազմազան են տպագրության վայրերը. Ամստերդամ, Հռոմ, Մարսել, Տրիեստ... Ռուսաստանում հայերեն առաջին այբբենարանը լույս է տեսել Պետերբուրգում, 1781 թ., իսկ Հնդկաստանում ավելի շուտ՝ 1772 թ., Մադրասում, որի հեղինակն է ազգային նշանավոր գործիչ Հակոբ Շահամիրյանը: Հետագայում այբբենարանները ավելի հաճախակի են տպագրվում և մինչև մեր դարի սկզբները նրանց թիվը հասնում է հարյուրի: Մեծ մասը գրված է գրաբար:*

*Այդ այբբենարաններից շատերը կառուցվածքով իրար նման են: Սկզբում տրվում էր այբուբենը, ապա բազմաթիվ էջերում տարբեր կապակցություններով միավանկ, երկվանկ, մինչև վեց և յոթ վանկանի տասնյակ բառեր: Աշակերտները պետք է վարժ կերպով սովորեին ընթերցել դրանք, որը շատ և շատ դժվար էր: Մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը աշակերտներին այդ տանջանքից ազատելու համար գրեց «Նախաշավիղ կրթության ի պետս նորավարժից» այբբենարանը, որը լույս տեսավ 1844 թվականին, սակայն արգելք դրվեց նրա տարածման վրա: Երկրորդ անգամ այն հրատարակվեց 1862 թվականին:*





Նախասովետական շրջանում հայ դպրոցներում տարածված այբբենարաններից էին Հովհաննես Արաքջյանի «Մայրենի լեզուն» (1901 թ.), Ղազարոս Աղայանի «Պատկերազարդ այբբենարանը» (1903 թ.) և «Արևիկը» (1908 թ.), Հովհաննես Թումանյանի, Լևոն Շանթի ու Ստեփան Լիսիցյանի «Լուսաբերը» (1907 թ.), Արշակ Չիլինգարյանի, Տիգրան Ռաշմաճյանի և Ավետիք Իսահակյանի «Դասընկերը» (1909 թ.), Նիկողայոս Տեր-Ղևոնդյանի «Արփիկը» (1910 թ.) և այլն: Սրանք հիմնականում լույս են տեսել Թիֆլիսում և ունեցել են բազմաթիվ հրատարակություններ: Եղել են նաև երկլեզվանի այբբենարաններ՝ հայ-թուրքական, հայ-հունական, հայ-ռուսական:

Սովետահայ առաջին այբբենարանը՝ «Մուրճ և մանգաղը» կազմել է Մարուքե Դուրգարյանը, որը լույս է տեսել 1921 թ. Երևանում: Այնուհետև գործածության մեջ են մտել բազմաթիվ այլ այբբենարաններ: Դրանցից համեմատաբար երկար կյանք է ունեցել Հ. Հայրապետյանի և Ավ. Ծուղուրյանի կազմածը. (1944—1964 թթ.): Երևանում տպագրվել է նաև հատուկ այբբենարան սփյուռքի դըպրոցների համար: Մինչև 1940-ական թվականները և այնուհետև՝ ներգաղթած հայերի համար, հրատարակվել են մի շարք այբբենարաններ անգրագիտության, վերացման և կիսագրագետների համար: Այբբենարաններ են կազմըվել խուլ-համր երեխաների համար: Այժմ Սովետական Միության հայկական դպրոցներում օգտագործվում է Աշոտ Տեր-Գրիգորյանի և Արմեն Վարդանյանի այբբենարանը:

Տարեցտարի, տպագրական հընարավորությունների ընդարձակվելու հետ, այբբենարանները դառնում են ավելի գրավիչ և ավելի խնամքով են տպագրվում:

ԱՎԵՏԻՍ ԾՈՒՂՈՒՐՅԱՆ





## ԱՐՋՈՒԿԻ ԶԱՐՄԱՆՔԸ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Անտառում վայրի խնձորներ կային
Ու վայրի տանձեր կային անտառում,
Դա էր պտուղը արջուկ արքայի,
Եվ նա էր նրանց տերը անտառում:

Ու երբ եղյամն էր իջնում անտառին,
Անտառը աշնան զգեստ էր կարում,
Գալիս էր արջուկն ու արջավարի
Մեկ-մեկ ծառերն էր իր թափահարում:

Ուտում էր վայրի տանձերը մեկ-մեկ
Ու մրթմրթում էր իր ծառերի տակ,
Որ իր պտուղը չի հասնում երբեք,
Որ իր պտուղը թթու է ու խակ:

Սակայն այս անգամ շա՜տ, շա՜տ զարմացավ,
Երբ որ մրգերը նա տեսավ հասուն,
Հանույքից նույնիսկ ծառը բարձրացավ
Եվ քաղցրությունից շուրթերն էր լիզում.

— Այս ի՞նչ հրաշք է կատարվել այստեղ՝
Ծառերը նույնն են, բայց պտուղն՝ ուրիշ,
Այս ո՞վ է դարձել իմ ծառերին տեր,
Այս ո՞վ է փոխել համն իմ մրգերի:

Բայց ի՞նչ իմանար արջուկը խենթուկ,
Որ տղաները նախանցյալ տարի
Պատվաստել էին բոլոր մրգատու
Ծառերն հնամյա անտառում վայրի:

Նկ. ԱՐՈՒՍՅԱԿ ՊԱՐՈՆՅԱՆԻ






# ՂԱԶԱԽԱԿԱՆ ՍՍՀ

Անծայրածիր է ղազախական հողը, անսահման հարուստ է և բազմազան: Մի կողմից բարձրաբերձ լեռներ՝ հավերժական ձյունը գագաթներին, մյուս կողմից՝ հարթավայրեր, տեղ-տեղ ծովի մակերեսից էլ ցած, և՛ ծովածավալ տափաստաններ, և՛ անջուր անապատներ, ուր հպարտ ու հեզաքայլ քայլում են համբերատար ուղտերի քարավանները, և՛ ծովաչափ լճեր՝ Կասպիականն ու Արալյանը, որոնց վրա լողում են ամենախոշոր ծովային նավեր: Հապա որքա՛ն գանձեր է թաքցնում ղազախական հողը իր ընդերքում՝ է՛լ քարածուխ, է՛լ նավթ, է՛լ պղինձ և ուրիշ-ուրիշ հանքատեսակների վիթխարի պաշարներ... Քայլում են երկրաբանները և որտեղ նրանք ո՛տք են դնում, այնտեղ նոր գործարաններ ,արդյունաբերական նոր կոմբինատներ, նոր ավաններ ու քաղաքներ են բարձրանում:

Ղազախական ՍՍՀ-ն, Ռուսաստանյան ֆեդերացիայից հետո, իր գրաված տարածությամբ ամենամեծն է Սովետական Միության կազմի մեջ մտնող եղբայրական հանրապետություններից: Ղազախական խամ ու խոպան տափաստանը գութանի խոփ չէր տեսել, կատաղի քամիներն էին տիրություն անում այնտեղ: Բայց մի օր խուժեցին այնտեղ հզոր տրակտորների ու կոմբայնների շարասյուներ: Եղբայրական մյուս հանրապետությունների օգնությամբ, դարավոր խոպանը ծաղկեց, դարձավ բերքի ծով, հացի շտեմարան, իսկ այնտեղ գտնվող կորած-մոլորած հինավուրց մի քաղաք ստացավ նոր անուն, կոչվեց Ցելինոգրադ և հռչակվեց:

Ղազախական ՍՍՀ-ի մայրաքաղաքը՝ Ալմա-Աթան ժամանակակից գեղեցիկ քաղաք է, արդյունաբերության, գիտության ու մշակույթի խոշոր կենտրոն, նշանավոր նաև իր պտղատու, մանավանդ խնձորի այգեստաններով: «Ալմա-Աթա» նշանակում է խնձորի հայր: Ալա-թաու մեծապանծված լեռան ստորոտին է գտնվում Ալմա-Աթան: Ալա-թաուն ավելի քան հինգ հազար մետր բարձրություն ունի, ծածկված է հավերժական ձյունով: Ամռան իսկ ամիսներին այնտեղից սկիզբ առնելով, քար ու կանաչին շաղախված ցած են գահավիժում քանի՛, քանի՛ հաստամեջք, փրփրաբաշ ջրվեժներ: Մի հեքիաթային պատկեր է ներկայանում դիտողին Ալմա-Աթայի թիկունքն ի վեր, երկնքի ֆոնի վրա:

# ԳԼԽԱՐԿԸ

*ՈՒՏԵԲԱՅ ՏՈՒՐՄԱՆՋԱՆՈՎ*

*Նկ. ԷԴՈՒԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ*

Աշուն էր: Տափաստանում խոտը դեղնել էր ու չորացել: Սկսվել էին ցրտերը: Հաճախ փչում էր ուժեղ, կտրող քամին՝ «քաջ Կարաբաշի զայրույթը», ինչպես անվանում էին ծերունիները:

Մի այդպիսի աշնանային ցուրտ օր Կարաշն ու Տուրաշը խաղում էին աուլի եզրում: Տղաներն այնպես էին տարվել խաղով, որ չնկատեցին, թե ինչպես փչեց «քաջ Կարաբաշի զայրույթը»: Դեղին փոշին բարձրացավ պտուտահողմի հետ ու միանգամից լցրեց օդը:

Տղաները ճարպկորեն իրենց գցեցին մոտակա ձորակը և թաքնվեցին թփուտներում: Այստեղ նրանք պաշտպանված էին քամուց: Որքա՛ն արագ փոխվեց շրջապատը: Աշնան շնչից չորացած փոքր թփերը, քամու կամքին հնազանդ, պոկվում էին արմատից և սլանում տափաստանով, ազատություն ստացած գառների նման: Բոլորից առաջ թռչում էր դաշտագլորը: Զուր չէ, որ նրա մասին ասում են. «Ես թռչում եմ, թռչում եմ, թռչում, ուր քեֆս է ուզում, այնտեղ եմ թռչում: Քամու, հողմերի ետևից վազում, գնում եմ այնտեղ, ուր սիրտս է ուզում»:

Հանկարծ դաշտա-գլորի կողքին տղաները մի անծանոթ առարկա տեսան: Ուշադիր նայեցին: Պարզվեց, որ գլխարկ է: Գլխարկը ցատկոտում էր ու քամու հետ արագ սլանում տափաստանով:

Կարաշը դուրս թռավ ձորակից ու կռացած վազեց գլխարկի ետևից: Նրա հասավ, բռնեց ու նորից ճարպկորեն իրեն գցեց ձորակը: Շունչը տեղը բերելով, նա գլխարկից թափ տվեց փոշին և սկսեց ուշադիր զննել:

— Սա տարեց մարդու գլխարկ է,— ասաց նա: Տուրաշն ավելացրեց.

— Այդ գլխարկը կորցնողը հետիոտն է:

— Եվ այդ մարդու աջ ձեռքը չկա,— նկատեց Կարաշը:

Տուրաշը ուշադիր զննեց գլխարկը, նախ դրսից, ապա ներսից և ասաց.

— Դա միայնակ, ամուրի մարդ է:

— Ինչպե՞ս իմացար,— զարմացավ Կարաշը:

— Գլխարկի աստառի վրա ասեղ ու թել կա: Եթե գլխարկի տերը կին ունենար, ապա ասեղ ու թել չէր պահի իր մոտ: Իսկ դու ինչպե՞ս իմացար, որ այդ մարդը ծեր է:

— Շատ հեշտ,— ծիծաղեց Կարաշը:— Եթե գըլխարկի տերը երիտասարդ լիներ, առանց դժվարության կհասներ գլխարկի ետևից:

— Եվ, իհարկե, նա հետիոտն է,— նկատեց Տուրաշը:— Ձիավորը հեշտությամբ կհասներ գլխարկի ետևից, թեկուզ և ծեր լիներ:

— Ճի՛շտ է,— բացականչեց Կարաշը:

— Բայց դու ինչո՞ւ ես կարծում, թե նա մի ձեռք ունի,— իր հերթին հարցրեց Տուրաշը:

Կարաշը բացատրեց.

— Այս սպիտակ գլխարկը, որ մի քիչ թեք են կրում, ձախ կողմից ավելի սևացած է, քան աջից: Ըստ երևույթին այս գլխարկը դրել ու հանել են մի ձեռքով՝ ձախով:

Շուտով մրրիկը հանդարտվեց: Շրջապատը խաղաղվեց ու տղաները դուրս եկան իրենց թաքստոցից: Ծանր ու դանդաղ նրանց ընդառաջ էր գալիս գլխաբաց մի ծերունի: Նա ուշադիր նայում էր ոտքերի տակ, կարծես ինչ-որ բան էր փնտրում:

Տղաները ճանաչեցին ծերունուն: Դա միթևանի Կարահիմեդ-աթան էր: Նա ապրում էր միայնակ, աուլի վերջին տանը:

Իր գլխարկը տեսնելով Կարաշի ձեռքում, ծերունին ուրախացավ ու շնորհակալություն հայտնեց տղաներին: Իսկ Կարաշն ու Տուրաշը ուրախ էին, որ ճիշտ են գուշակել, թե ում գլխարկն էր:

*Թարգմ. ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



## Ո՞ՐՆ Է ՃԻՇՏԸ

*ՄՈՒԶԱՖԱՐ ԱԼԻՄԲԱԵՎ*

*Մի ծույլ տղա գիր է գրում*
*Եվ գլուխը տարուբերում.*
*Մուկը՝ ջրում,*
*Ձուկը՝ սարում,*
*Սավառնում է ձին երկնքում,*
*Կառքին լծված*
*Ծիտն է տնքում:*
*Սխալվեցի՝ ձին չի թռչում,*
*Կառք չի քաշում*
*Ոչ մի թռչուն:*
*Բողկը՝ ծառին,*
*Տանձը՝ հողում,*
*Օձը՝ երգիչ,*
*Բազեն՝ սողուն:*
*Չէ, սխալ է, ճիշտ չեմ գրում,*
*Երգ չի ասում օձն իր օրում:*
*Վիթը՝ լողորդ,*
*Ծիտը՝ պարող,*
*Սագը՝ դերձակ՝*
*Հմուտ կարող,*
*Վա՜յ, սխալ եմ նորից արել,*
*Ո՞նց կարող է սագը կարել:*
*— Քո մեղքով է, գրասեղան,—*
*Ասաց ու բակ վազեց տղան:*

*Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

## Իմ տունը

*ԱՆՎԵՐ ԴՈՅՄԵՆԲԻԵՎ*

*Կավե մի տուն շինեցի ես,*
*Մեծ, գեղեցիկ մի տուն,*
*Պատրաստեցի հետո նաև*
*Մի պատշգամբ սիրուն:*

*Եվ ծառեր էլ տնկեցի ես*
*Չորս բոլորը իմ տան,*
*Որ երբ ուզեմ՝ ձեռքս մեկնեմ,*
*Պոկեմ խնձոր ու տանձ:*

*Դե, հիմա էլ առնեմ շվիս*
*Ու նվագեմ շորոր.*
*Թող գան ուրախ թիթեռ-բզեզ,*
*Պար գան տանը իմ նոր:*

*Բարո՜վ եկաք, մրջյո՛ւն քույրիկ,*
*Բզեզի՛կ իմ բարի,*
*Խնդրե՜մ, խնդրե՜մ, երգի՛չ ծղրիդ,*
*Մի՛ ամաչի, արի՛:*

*Եվ բոլո՜րը՝ ով տխուր է,*
*Ով ընկերներ չունի,*
*Իմ եղբայրն է ու իմ քույրն է,*
*Թող իմ տունը մտնի:*

*Փոխադրությունը՝ ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ*

# ՄԵԿՆ Է ՄԵ՞Ծ, ԹԵ ՀԱՐՅՈՒՐԸ

ԴԱՎԻԹ ԳԱՍՊԱՐՅԱՆ

Ամբողջ դասի ընթացքում Հայկի միտքը զբաղված էր կողմնակի հարցերով: Ֆիզիկայի ուսուցիչ Չոբանյանը զգաց այդ և, նկատողություն անելու փոխարեն, ցանկացավ Հայկին հանկարծակիի բերել:

— Մե՞կն է մեծ, թե՞ հարյուրը, Հա՛յկ,—ասաց նա:

Հայկը միայն իր անունը լսեց, գլուխը բարձրացրեց ձեռքերի վրայից և շփոթված կանգնեց տեղում, չիմանալով ինչ պատասխանի: Ետևում նստած չարաճճի Վաչեն, ծիծաղելու առիթը բաց չթողնելու համար, հուշեց.

— Ասա մե՛կը, մե՛կը...

— Մե՛կը,— բարձրաձայն կրկնեց Հայկը:

Դասարանը փռթկաց:

— Նստի՛ր,— ասաց ֆիզիկայի դասատուն,— ուշադի՛ր եղիր, հարցերը չես լսում:

Հայկը խեթ-խեթ նայեց Վաչեին, և եթե ֆիզիկայի դասատուն իր կողմ թեքված չլիներ՝ անպայման մի լավ կհասցներ Վաչեի գլխին: Իսկ հիմա ալարկոտ շարժումներով նստեց և աչքերը հառեց գրատախտակի մոտի սեղանին դրված փորձանոթներին:

Քիչ հետո, երբ Աստղիկը գնաց դասը պատմելու, նա նորից գլուխը դրեց ձեռքերին և աչքերն ուղղեց լուսամուտից դուրս: Դրսում արև էր, տա՜ք, հաճելի արև: Բակում դպրոցի պահակ Արմենակ քեռին ծառերն էր ջրում: Երկրորդ հերթի մի խումբ աշակերտներ սպորտ հրապարակում գոտի էին խաղում: Հայկը երանությամբ նայում էր դուրս և մտքում րոպեները հաշվելով, անհամբեր սպասում զանգին:

Դասերից հետո տղաներով գնացին մերձակա անտառից ընկույզ հավաքելու: Իրենցից մեկ-երկուսը բարձրացան ծառը: Նրանք փայտերով ընկույզը թափ էին տալիս, իսկ մյուսները հավաքում էին, կուտակում, որպեսզի վերջում բաժանեն:

Հայկը չէր մոռացել Վաչեի կատակը, սխալ հուշելը, և որոշել էր տեղը որևէ ձևով հանել: Ընկույզը բաժանելու ժամանակ, նա զսպելով ծիծաղը, հարցրեց Վաչեին.

— Վաչե՛, ինչ ասացի՞ր, մե՞կն է մեծ, թե՞ հարյուրը:

Վաչեն մոռացել էր դասարանի կատակը, մի պահ ուզեց ասել հարյուրը, հետո հիշեց ու ծաղրանքով պատասխանեց.

— Մե՜կը... Իհարկե մե՛կը...

Տղաները նորից ծիծաղեցին: Բայց Հայկը հանգիստ էր: Ընկույզ բաժանողն ինքն էր և արդեն մտածել էր, թե ինչ պիտի անի: Եվ նա հարյուր-հարյուր ամեն մեկին ընկույզ բաժանեց, իսկ դրա դիմաց, երբ հերթը հասավ Վաչեին, տվեց մեկ ընկույզ և հանդիսավոր ասաց.

— Դե՛, Վաչե՛, եթե մեկն է մեծ, ահա՛ քեզ մեկ ընկույզ, որ ավելին է այս հարյուրից:

Վաչեն շփոթվեց, իսկ Հայկը սկսեց քահ-քահ ծիծաղել: Նրա աչքերը փայլփլում էին, և նրան հաճույք էր պատճառում այն, որ տղաները ևս հավանեցին իր կատակը:

Վերջում Վաչեին բաժին ընկավ երեք ընկույզ, ամեն մեկին հասած երեք հարյուրի դիմաց: Բայց Վաչեին ոչ թե երեք ընկույզն էր մտահոգում, այլ այն, որ ընկերների ներկայությամբ ինքը Հայկի առաջ անզոր գտնվեց: Ընկույզն ի՜նչ. անտառում լիքն է, երբ ցանկանա, կհավաքի, իսկ Հայկը այս դեպքը կպատմի բոլորին և կպարծենա իր հնարամտությամբ:

Վաչեն հանկարծ հիշեց, որ վաղը մաթեմատիկայից ստուգողական աշխատանք պետք է գրեն: Իսկ Հայկը նեղն ընկնելիս իրենից էր արտագրում: Եվ նա դիտավորյալ խոսքն ուղղելով բոլորին, հարցրեց, թե վաղը մաթեմատիկայից ի՞նչ ունենք:

— Ստուգողական...— ձայն տվեցին բոլորը միաբերան: Վաչեն նայեց Հայկի աչքերին.

— Ստուգողական, Հա՛յկ:

Երբ մտան գյուղ և մյուս տղաները հեռացան իրենց տները, Հայկը մոտեցավ Վաչեին և քանի որ իրենց տները նույն փողոցի վրա էին գտնվում, քայլեցին միասին:

— Վաչե՛, արի ընկույզը կիսենք, ինչի՞ս է պետք այսքան շատ:

Նա բաց արեց պայուսակը և ընկույզը բռով փորձեց լցնել ընկերոջ գրպանը: Վաչեն առարկեց, բայց Հայկը համառ էր:

Ու երբ Հայկը կիսել վերջացրել էր ընկույզը և դեռ մի բան էլ ավել լցրել ընկերոջ գրպանը, Վաչեն հաշտվողական մեղմությամբ ու մտերմիկ տոնով ասաց.

— Հա՛յկ, վերջը չիմացանք, մե՞կն է մեծ, թե՛ հարյուրը...

Երկուսն էլ ծիծաղեցին: Մտքի մեջ մեկը մյուսին ներեց: Մտքի մեջ մեկը մյուսի հետ հաշտվեց:

...Հաջորդ օրը մաթեմատիկայի ստուգողական աշխատանքի ժամին Հայկը Վաչեից ոչինչ չարտագրեց: «Կչարչարվեմ, ինքս կլուծեմ, թող Վաչեն չկարծի, թե երեկ իր հետ հաշտվեցի, որ այսօր իրենից արտագրեմ»,— մտածեց նա:

# ԽԵԼՈՔՆ ՈՒ ՀԻՄԱՐԸ

(ԱՖՐԻԿՅԱՆ ՀԵՔԻԱԹ)

Մի մարդ իր մասին ասում էր, թե ինքը ամեն բան գիտի: Եվ քանի որ ինքն ասում էր, ուրիշներն էլ լսում էին և կրկնում նրա ասածը:

Կար նաև մի մարդ, որի մասին բոլորն ասում էին, որ նա աշխարհի ամենահիմար մարդն է: Եվ քանի որ ուրիշներն ասում էին, ինքն էլ լսեց ու սկսեց այդպես մտածել:

Մի անգամ հիմարը գնաց խելոքի մոտ ու ասաց.

— Սիրելի՛ եղբայր, ինձ պետք է քո խորհուրդը: Միայն վախենում եմ, որ նույնիսկ քեզ նման ամենագետը չկարողանա ինձ օգնել:

Խելոքն ասաց.

— Կա՞ այնպիսի բան, որ ես չիմանամ: Ասա՛ տեսնեմ՝ ինչ է պատահել:

— Գիտես ինչ, ես պետք է գետի մյուս ափը անցկացնեմ մի այծ, մի քիչ կաղամբ և մի ընձառյուծ: Նավակս փոքր է: Անհրաժեշտ կլինի երեք անգամ գնալ-գալ: Ահա և եկել եմ, որ ինձ ասես, չէ՞ որ դու խելոք ես, ամեն ինչ գիտես, իմ փոխարեն դու ինչպե՞ս կվարվեիր:

Խելոքն ասաց.

— Դա շատ հասարակ բան է: Ես նախ կտեղափոխեի ընձառյուծին:

Հիմարը թե՝

— Բայց մինչև դու տեղափոխես ընձառյուծին, այծը կուտի կաղամբը:

— Օ՜, իհարկե,— ասաց խելոքը:— Այդ դեպքում պետք է տեղափոխել այծին, հետո ընձառյուծին, իսկ հետո՝ կաղամբը:

— Բայց մինչև դու գնաս կաղամբի ետևից,— ասաց հիմարը,— ընձառյուծը կուտի այծին:

— Ճշմարիտ է, ճշմարիտ: Պետք է այսպես անել: Լսիր և հիշիր: Սկզբում պետք է տեղափոխել այծին, հետո կաղամբը... Ո՛չ, սպասի՛ր: Այծն ու կաղամբը չի կարելի միասին թողնել: Ավելի լավ է այսպես. սկզբում՝ կաղամբը, հետո... Ոչ, դա էլ չեղավ. ընձառյուծը այծին կուտի... Դու ինձ պարզապես շփոթեցրիր: Այդքան հասարակ բանն ինչ է, որ ինքդ չես կարողանում անել:

— Հավատա, որ կարող եմ,— ասաց հիմարը:— Եվ իսկապես դրա համար շատ խելք էլ հարկավոր չէ: Սկզբում ես այն ափը կտեղափոխեմ այծին...

— Դե ես այդպես էլ ասում էի:

— Հետո կաղամբը...

— Դե տեսնում ես, դու անում ես այնպես, ինչպես, քեզ խորհուրդ տվեցի:

— Հետո՞...

— Այո՛, այո՛, հետո... Չէ՞ որ ես հենց այդ էլ ասում էի քեզ:

— Հետո ես այծի հետ ետ կվերադառնամ, այծին կթողնեմ, իսկ ընձառյուծին կտեղափոխեմ մյուս ափը: Չէ՞ որ նա կաղամբ չի ուտում:

— Իհարկե, չի ուտում: Վերջապես գլխի ես ընկնում:

— Իսկ հետո ես նորից կգնամ այծի ետևից: Եվ այսպես անվնաս կմնան և՛ այծը, և՛ կաղամբը, և՛ ընձառյուծը:

— Տեսնո՞ւմ ես,— ասաց խելոքը,— կուր չէր, որ եկար ինձանից խորհուրդ հարցնելու:

— Իրոք դու ինձ օգնեցիր,— ասաց հիմարը:— Դրա համար անչափ շնորհակալ եմ: Դու ինձ ասացիր, որ ես խնդիրը լուծեմ ինքնուրույն, և դա ամենալավ խորհուրդն էր:

Թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Արթնացան առավոտ ծեգին: Մոտակա սարերից մշուշները կախվել էին խոնավ հովտի վրա: Երկինքն ամպամած էր ու ցածր: Բանավանում օդը պաղ էր, լսվում էր մոտակա գետակի վշշոցը: Անձրև չէր գալիս, բայց զգացվում էր, որ նորից կարող է մաղել:

Հայրը գործի դրեց հին «Մոսկվիչը»: Տղան ետևի նստատեղին տեղավորեց ուսապարկերն ու կարթաձողերը: Բանավանից դուրս եկան դանդաղ ընթացքով:

Քիչ անց, ավելի մթնեց, և հողմարգել ապակու վրա ընկան ծանր կաթիլներ: Ավտոմեքենայի շարժիչը մեծ աղմուկ էր բարձրացնում, և առհասարակ այս մեքենայով գնալը հաճույք չէր:

— Դու լո՞ւրջ ես ասում, որ այդ լճում մարդ կորցնում է վերևն ու ներքևը,— հարցրեց տղան:

— Միանգամայն ճիշտ: Դա լճի կախարդանքն է:

— Եվ ես կտեսնե՞մ այդ կախարդանքը:

— Անպայման: Եթե մոտակա գյուղը հասնենք երեկոյան, դեռ լույսը չբացված կկարողանանք լիճ բարձրանալ:

Այդ ժամերին լճի վրա իջած է լինում գիշերվա մշուշը և ջրերը մուգանում են: Լիճը քնում է: Առավոտվա խաղաղության մեջ, մեկ էլ տեսար, լճի մակերեսին մերթ այստեղ, մերթ այնտեղ տարածվեց մանրիկ սրթսրթոց: Գիշերվանից քաղցած ձուկը բարձրանում է ջրի վերին շերտերը: Դա կարմրախայտ որսալու ամենալավ ժամանակն է:

— Չորս տարի առաջ ես այնտեղ կես մետրանոց կողակներ եմ որսացել,— ասաց հայրը:—Ես ուզում եմ, որ դու այնտեղ տեսնես արևածագը: Դրա համար էլ պետք է, որ մենք գիշերը լինենք այնտեղ:

Ա՜յ, դա նայելու բան է՝ արևածագը՝ լճի վրա: Ջրերի գույները հենց աչքիդ առաջ բացվում են, նկտում են կապտել, հետո մեկից սկսում է տարածվել փիրուզը, և պառկում են փիրուզն ու կապույտը շերտ-շերտ լճի մակերեսին, մառախուղը նոսրանում է, և հակառակ ափին սոճիները քիչ-քիչ սկսում են նկարվել իրենց տակի ջրերում, ավելի ու ավելի հստակ, մինչև ամենանրբին գծերը, և հանկարծ լինում է մի պահ, երբ դժվարանում ես որոշել իսկապես որտե՞ղ են սոճիները և որտե՞ղ է նրանց արտացոլումը, վերևո՞ւմ, թե՞ ներքևում: Եվ լինում է մի պահ, երբ կորցնում ես վերևն ու ներքևը:

— Ես հասկանում եմ գեղեցկությունը, ես գիտաշխատող էլ կդառնայի, բայց ինձ պակասում է համառությունն ասեմ թե հետևողականությունը: Հազիվ բուլդոզերավար դարձա: Այն էլ բոլորովին պատահաբար:

Նա ետ նայեց: Տղան քնել էր գլուխը ուսին հակած:

Շրջապատը մշուշված էր անձրևով: Գորշ բարդիները վերևում միաձուլված էին երկնքին: Տղամարդը ազդանշանեց գյուղի ծայրի տան մոտ: Դուռը բացվեց, դուրս եկավ Սահակը:

— Հիմա սատանաներն էլ իրենց որջից դուրս չեն գալիս,— ասաց նա:

— Իսկ նրանք որջերո՞ւմ են մնում,— ասաց տղան:

— Տեսնո՞ւմ ես, նա արդեն կարգին կատակել գիտե,— ասաց Սահակը:— Քեզ է նման: Բայց ի՞նչն է ձեզ դուրս քշել, գրողի՛ տարածներ:

— Հիշո՞ւմ ես, Սահա՛կ, մի ժամանակ ինչպիսի կողակներ էինք որսում:

— Հասկանում եմ...—ասաց Սահակը:— Դեհ, գրողի՛ տարածներ, ի՞նչ եք անձրևի տակ կանգնել, նե՛րս եկեք:

— Մենք առավոտ ծեգին պետք է լճի մոտ լինենք,— ասաց տղան:

— Այ թե ի՞նչ...— ասաց Սահակը:

Այնտեղ, որտեղ տղան նման չէր իրեն՝ հայրը գոհ էր մնում:

— Ներս գնանք, Պարսա՛մ,— ասաց Սահակը,—լավ օղի ունեմ...

— Նա ճիշտ է ասում,— ասաց հայրը,— մենք պետք է առավոտ վաղ լճում լինենք:

Հայրը մեքենան կանգնեցրեց բակում, հայր ու տղա հագան ուսապարկերը, վերցրին կարթաձողերը և բարի մաղթելով Սահակին, սկսեցին հեռանալ գյուղից:

Ճանապարհն այնուհետև բարձրանում էր լեռները: Հեռավոր լանջերի անտառակները ծածկված էին մշուշով: Լեռներից իջնում էին թուխպերը: Հայրը գիտեր. հեռու սարերի ետևում կսկսվի իսկական մեծ անտառը: Անձրևը թափվում էր անհավատալի ուժով:

— Գրո՞ղը տանի, իսկապես իմ բախտը չի բանում,—ասաց նա:

— Պարզապես մենք վատ ժամանակ ենք ընտրել,— ասաց տղան:

— Դու ոչինչ չես հասկանում,— ասաց հայրը:

Նա հասկանում էր, որ այն, ինչ անում էր ինքը, պարզապես կատաղությունից էր, բայց թե ինչքան կբավականացներ այդ կատաղությունը, նա չգիտեր:

— Գրո՞ղը տանի, իսկապես իմ բախտը չի բանում,— կրկնեց նա:



# ԿԱՐՄՐԱԽԱՅՏ ՈՐՍԱԼՈՒ ԱՄԵՆԱԼԱՎ ԺԱՄԱՆԱԿԸ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Արահետից մի կողմ, սարավանդի վրա կանգնած էր մի բեռնատար ավտոմեքենա, ավելի հեռվում մի բուլդոզեր, ընկած էին էլեկտրահաղորդման երկու կայմ: Շուրջը ոչ ոք չկար: Սատանան գիտե, թե ինչպես էր այդ ավտոմեքենան հասել այստեղ: Տղան հոգնել էր, հայրը գնում էր առջևից, իր և նրա ուսապարկերը շալակած: Նա նույնպես հոգնել էր, բայց ջանում էր ցույց չտալ: Անձրևի խշշոցը գնալով դարձավ ավելի տարածուն, լցնելով ամբողջ հովիտը, մինչև հեռավոր սարերի հազիվ տեսանելի շարանները:

Կամրջով անցան գետը, և անձրևի մշուշի մեջ արահետի երկու կողմերում սոճու հնամենի անտառն էր: Լեռնանցքից մի արահետ տանում էր դեպի անտառի խորքը, վարի բացատում երևում էր մի տնակ, ավելի այն կողմ՝ զառիթափից ցած, հոսում էր գետը:

— Դա գեոսաշրջիկների կացարանն է,— ասաց հայրը:

— Ծխում է,— ասաց տղան:

— Այո՛, ծխում է: Հիմա այնտեղ տաք է ու չոր:

Արահետը նորից տանում էր դեպի լեռները:

— Ես քաղցած եմ,— ասաց տղան:

— Ես էլ եմ մտածում, որ չէր խանգարի մարդավարի ճաշել,— ասաց հայրը:

Տնակը փայտե շինվածք էր, դռան վրա իջնող լայն ծածկով, տանիքի վրայից բացվող լուսամուտներով: Առաջին հարկում ճաշարանն էր: Վաճառասեղանի մոտ ճերմակ գոգնոց կապած մի գեր կին հաշվում էր փողերը և ստեպ-ստեպ դառնալով, քշում համրիչի հատիկները:

— Տղան ձե՞րն է,— հարցրեց նա:— Դուք լավ թրջվել եք, մոտեցեք շորերը չորացրեք վառարանի մոտ:

— Մենք քաղցած ենք,— ասաց հայրը:

— Հիմա ես ձեզ նախաճաշ կտամ,—ասաց կինը:—Հետո դուք կարող եք հանգստանալ, վերևում ազատ սենյակներ կան: Նստեցե՛ք, քանի այստեղ խաղաղ է: Հիմա կգան բանվորները և իրարանցում կսկսվի:

— Մենք պիտի գնանք լիճ,— ասաց տղան:

— Օ՛, խորհուրդ չեմ տա հիմա այդ ճանապարհով գնալ,— ասաց կինը:—Տղան չի դիմանա, առանց այդ էլ նա հոգնած տեսք ունի:

— Լճում լավ է լինել առավոտները,— ասաց տղան:

— Բայց նայեք, թե ինչպես է թափվում,— ասաց կինը:

Եկան բանվորները, բրեզենտե թաց արտահագուստներով, հոգնած:

Նստեցին սեղանների մոտ և գոգնոց կապած կինը սկսեց նրանց ճաշ մատուցել:

— Դուք որտեղի՞ց եք գալիս,— ասաց տղան իր մոտ նստած բանվորին:

— Լեռան այն կողմից:

— Ի՞նչ եք անում լեռան այն կողմում:

— Էլեկտրահաղորդման գիծ ենք անցկացնում:

— Այս եղանակի՞ն,— հարցրեց տղան:

— Ավելի վատ եղանակ էլ է լինում: Հապա դու այստեղ արի ձմեռը, եթե կարողանաս գալ: Մեր աշխատանքն այդպես է:

— Նա հոգնած տեսք ունի,— ասում էր կինը նրա հորը,—դուք տղային համոզում եք ճանապարհ ընկնել:

— Ես նրան երբեք չեմ համոզում,— ասաց հայրը:— Կհամոզես մի անգամ, բայց ուրիշ անգամ նրա կողքին չես լինի: Պետք է, որ իր՝ մարդու մեջ լինի համառությունը:

— Բոլոր դեպքերում նրան համոզեք չգնալ: Նա հոգնած տեսք ունի:

— Դե՞,— ասաց հայրը, մոտենալով տղային:

— Նա ասում է՝ այստեղից երեք ժամում կարելի է հասնել լիճ,— ասաց տղան:

— Այո՛, երեք ժամում, եթե մի քիչ զոռ տված գնաք,— ասաց բանվորը:

Հայրը սեղմեց շուրթերը:

Դրսում մութ էր: Թուխպերը կախվել էին լեռնանցքի վրա, ծանր մշուշները իջնում էին լանջերից վար, կիրճերի խորքերը: Դռան բացվելու հետ ճաշարան խուժեց անձրևի սառնաշունչ աղմուկը:

Նրանք բարձրացան մինչև լեռնանցքի արահետը և ետ նայեցին: Ցածում ծխում էր տնակը, զառիթափից վար հոսում էր պղտոր, հորդացած գետը: Քիչ անց, նրանք շրջվեցին ուրիշ սարերի արանքը և տնակը այլևս չէր երևում:



# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐԻ

## ԼԵՆԿԹԵՄՈՒՐՆ ՈՒ ՎԵԶԻՐԸ

*Մի անգամ Լենկթեմուրի մոտ է մտնում նրա վեզիրը և տեսնում է, որ թագավորը լաց է լինում:*

*— Թագավորն ապրած կենա, ի՞նչ է պատահել,— հարցնում է նա:*

*— Բա չե՞ս ասում, տարեկան մի անգամ նայում եմ հայելուն ու սարսափում՝ տեսնելով իմ այլանդակ դեմքը, ինչպե՞ս լաց չլինեմ,— պատասխանում է Լենկթեմուրը:*

*Վեզիրը ավելի բարձրաձայն է սկսում լաց լինել:*

*— Քեզ ի՞նչ պատահեց,— հարցնում է Լենկթեմուրը:*

*— Թագավորն ապրած կենա,— ասում է վեզիրը,— դու տարեկան մի անգամ ես տեսնում դեմքդ, իսկ ես ամեն օր, ամեն ժամ, բա ես ինչպե՞ս դիմանամ:*



## ԱՂՔԱՏԻ ԵՎ ՀԱՐՈՒՍՏԻ ԿՌԻՎԸ

*Մի հարուստ և մի աղքատ մարդ կռվի են բռնվում իրար հետ: Հարուստն ասում է.*

*— Անպետքի՛ մեկը, դու էն չե՞ս, որ քո հայրը քաղցած մեռավ:*

*— Անպետքը դո՛ւ ես,— պատասխանում է աղքատը,— իբր թե հաց կա՞ր ու իմ հայրը չկերավ...*

## ԳԱՅԼՆ ՈՒ ՊԱՌԱՎԸ

*Քաղցած գայլը անտառից դուրս գալով՝ մտնում է մի գյուղ: Գիշերը գյուղի փողոցներում շրջելիս՝ լսում է մի պառավ կնոջ ձայն, որ լացող թոռանը սաստելու համար, ասում էր. «Սո՛ւս կաց, թե չէ քեզ գայլին կտամ, որ ուտի»: Ուրախացած գայլը գալիս է տան մոտ, որ իր բաժինը ստանա: Ականջները լարած սպասում է: Մեկ էլ լսում է, թե ինչպես նույն պառավը երեխային գրկում խաղացնելով, ասում է. «Մի՛ վախենա, որդի՛, եթե գայլը գա, կսպանենք նրան»: Այս լսելով, քաղցած գայլը գլուխը կախ հեռանում է գյուղից, քթի տակ մրթմրթալով. «Երևում է, խոսքի տեր մարդիկ չեն, մի բան կասեն, մի ուրիշ բան կանեն...»*

---

## ԺԼԱՏԸ

Լ. ՍԵՐԳԵԵՎ



Բոլորը ինձ բարի են համարում, բայց ես ժլատ եմ: Ափսոսում եմ իմ ունեցած իրը տալ ուրիշին, եթե նույնիսկ այն ինձ պետք չէ: Եթե ուրիշին պետք է, կարող է ինձ էլ պետք գալ:

Մի անգամ Վովկան մոտեցավ ինձ.

— Դու «Արքայական ծովահենները» գիրքն ունե՞ս,— հարցրեց նա,— տո՛ւր կարդամ:

— Չեմ կարող,— ասացի,— ես եմ կարդում:

— Կարդաս վերջացնես, կտա՞ս:

— Կտամ:

Հետո ինձ մոտեցան Պետկան ու Գենկան: Պետկան ներկերս խնդրեց, Գենկան՝ հեռադիտակս:

— Չեմ կարող տալ,— ասացի Պետկային,— ես եմ նկարելու:

Հետո դարձա ասացի Գենկային.

— Երեկոյան հեռադիտակը հարկավոր է ինձ:

Երկու օր անց Վովկան հանդիպեց ինձ ու հարցրեց.

— Կարդացիր վերջացրի՞ր:

— Ի՞նչը:

— «Արքայական ծովահենները»:

— Հա՛,— հիշեցի,— չէ՛, դեռ կեսն եմ կարդացել, ես կարդում եմ դանդաղ, ուշադիր, ամեն էջը առանձին, ոչ թե ուրիշների պես առաջին էջից տասներորդ էջը թռչելով:

# ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ

## ԱՂՔԱՏ ԳՅՈՒՂԱՑԻՆ ԵՎ ՀԱՐՈՒՍՏ ՔԱՂԱՔԱՑԻՆ

*Ժամանակին մի հարուստ քաղաքացի փողոցում տեսնելով աղքատ գյուղացուն անգործ կանգնած, ասում է.*

*— Արի էս պարկով շշերը մեր տուն տա՛ր, ես քեզ էնպե՜ս լավ-լավ բաներ կսովորեցնեմ, որ էլ խեղճ չես ապրի:*



*— Շատ լավ,— ասում է գյուղացին և, շալակելով պարկը, քայլում է քաղաքացու կողքով:*

*Ճանապարհին քաղաքացին ասում է.*

*— Բարեկա՛մ, եթե կասեն, թե՝ «գարի հացը գաթայից լավ է», բոլորովին չհավատաս. եթե կասեն, թե՝ «թանով ապուրը խորովածից լավ է», բոլորովին չհավատաս. եթե կասեն՝ «մքլած պանիրը թարմ յուղից լավ է», բոլորովին չհավատաս...*

*Այսպես գնալով հասնում են քաղաքացու տունը: Գյուղացին բաց է անում դուռը և, բարձրանալով սանդուխքի աստիճաններով, հանկարծ վերևից ձեռքից բաց է թողնում շշերով պարկը և ասում քաղաքացուն.*

*— Աղա, թե որ ասեն՝ «մեկը ողջ մնաց», բոլորովին չհավատաս:*

## ՀԻՆ ՆԱԽԻՋԵՎԱՆՑԻՔ ԵՎ ՍԵՎ ԲԱԴՐԻՋԱՆԸ

*Ժամանակին մի քանի հին նախիջևանցիներ ճանապարհ են գնալիս լինում: Գտնում են մի սև, երկայն բադրիջան և չկարողանալով իմանալ, թե ինչ է իրենց գտածը, որոշում են գնալ գյուղ և հարցնել տանուտերից:*

*— Էս ի՞նչ է,— հարցնում են նրանք:*

*— Ծիծեռնակի ձուտ է, ի՞նչ է, չե՞ք իմանում,— ասում է տանուտերը:*



Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

— Դե լավ— հառաչեց նա,— կսպասեմ, ինչ արած:

Նույն օրը ինձ մոտեցավ Պետկան:

— Այսօր կտա՞ս,— հարցրեց:

— Չէ՛, չեմ կարող,— ասում եմ,—դեռ կարդում եմ:

— Ի՞նչն ես կարդում,— զարմացավ Պետկան:

— Գիրքը:

— Ես քեզանից ներկեր խնդրեցի:

— Հա՜,— խոսքս փոխեցի ես,— էլի եմ նկարելու, շատ եմ նկարելու:

Քիչ անց հանդիպեցի Գենկային:

— Հը՞,— հարցրեց նա,— հիմա կտա՞ս:

— Չէ՛, չէ՛,— ասացի,— ես դեռ կարդում եմ... ո՛չ, նկարելու եմ... չէ, նայելու եմ...

— Հարկավոր չէ,— քմծիծաղ տվեց Գենկան,— ես հենց այնպես հարցրի: Հայրս ինձ համար գնել է, ինքս կարող եմ իմը քեզ տալ:

Եվ շուռ եկավ ու գնաց, իսկ ես կարմրեցի:



# ՀՈՐ ԴԱՍԸ

(Դյոթեի մանկությունից)

ԱԼԻՍ ԿՈԽ

Նկ. ԷԴՈՒԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ

Տասներկուսից մի քանի րոպե էր պակաս: Վոլֆգանգը կանգնած էր հոր աշխատասենյակի դռան առջև: Նա ձեռքին երկու տետր ուներ: Ճիշտ ժամը տասներկուսին նա քրոջ հետ մտնելու էր հոր սենյակը: Նրանք պետք է ցույց տային հորը այդ դասի համար հանձնարարված գրավոր աշխատանքները:

Վոլֆգանգը բանալու անցքից ներս նայեց: Նա կարողացավ տեսնել միայն հոր ձեռքերը փայլուն գրասեղանի վրա: Հավանաբար հայրը էլի իր հիշողությունններն է գրում Իտալիա կատարած ճանապարհորդության մասին՝ առջևի բաց տետրակի մեջ: Հայրը երիտասարդ ժամանակ մի ճանապարհորդություն էր կատարել դեպի Իտալիա, որի մասին միշտ սիրով էր հիշում: Այսօր կարծես նա իր գործն արդեն ավարտել է: Նա փակեց տետրը ու շորի կտորով մաքրեց գրիչը:

Վոլֆգանգն անհանգիստ նայեց շուրջը: Այս ո՞ւր մնաց քույրը՝ Կորնելիան: Մի՞թե դեռ չի վերջացրել աշխատանքը: Վերջապես նա իջավ աստիճաններով: Փութկոտ շարժումով տետրերը դրեց կոմոդի վրա և մատների ծայրին կանգնեց, որպեսզի կարողանա տեսնել իրեն հայելու մեջ: Նա գիտեր, որ հայրն ատում է ամեն տեսակ անկարգություն, և արագ ետ տարավ ճակատին ընկած մազափունջը:

Վոլֆգանգը կապեց քրոջ հագուստի ժապավենը, որ վազելիս քանդվել էր:

Սենյակից լսվեց ետ հրած աթոռի ձայնը: Քայլերը մոտեցան և դռների մեջ կանգնեց հայրը: Նա մի բարեկազմ ու հաղթանդամ մարդ էր, լայն, ուռուցիկ ճակատով, թավ հոնքերի տակից նայում էին խելամիտ աչքերը:

— Այդ դո՞ւք եք, հա՞,— ասաց հայրը,— նե՛րս եկեք,— նա գրպանից հանեց ոսկե ժամացույցը: Նախասրահից լսվեց ժամացույցի զանգերի վճիտ ձայնը, որն ազդարարեց կեսօրը:

Հայրը նորից գրավեց իր տեղը գրասեղանի մոտ, և երեխաները իրենց տետրերը դրին նրա առջև:

Վոլֆգանգը լատիներեն շարադրություն էր գրել: Հայրը քննաբար սկսեց էջ առ էջ կարդալ Վոլֆանգի շարադրությունը: Սենյակում քար լռություն էր տիրում: Լսվում էր միայն տետրակի թերթերի շրշյունը: Մեծ սենյակի բոլոր պատերի մոտ բարձր պահարաններ էին: Երբ միջօրեի արևի ճառագայթներն ընկնում էին սենյակ, փայլում էին գրքերի կողերին տպված ոսկե տառերը: Այս գրքերից մի քանիսն արդեն ծանոթ էին երեխաներին: Վոլֆգանգը մեծ հետաքրքրությամբ էր դրանք կարդացել: Պահարանի ամեն մի գիրքը գանձերով լի արկղիկ էր նրա համար, որն իր մեջ բազմաթիվ հմայիչ պատմություններ էր թաքցընում: Երանի բոլորն էլ այնքան զվարճալի լինեին, որքան «Տիլ Ուլենշպիգելը»: Նա որոշել էր շատ աշխատասեր լինել, որպեսզի հայրը այդ հրաշալի գրքերը տա կարդալու:

Հայրն ընդհատեց տղայի մտածմունքները:

— Որդի՛ս,— ասաց նա,— դու ջանասեր ու բարեխիղճ ես եղել: Քո շարադրությունն անսխալ է, ոճդ էլ՝ ճկուն: Ձեռագիրդ էլ հիմա կանոնավոր է,— նա խրախուսալից նայեց Վոլֆգանգին,— հիմա դու տասը տարեկան ես: Եթե շարունակես նույն ջանասիրությամբ սովորել, մի օր կսկսես հաճախել Լայպցիգի հռչակավոր համալսարանը, որտեղ սովորել եմ և ես:

Այս խոսքերով նա տետրը հանձնեց տղային:

— Հա՛յր,— ասաց Վոլֆանգը,— թույլ կտա՞ք ձեզ մի աշխատանք էլ ներկայացնել: Լատիներեն շարադրությունս ես գրել եմ մեկ ժամում: Քանի որ ես դեռ շատ ժամանակ ունեի, գրեցի ամբողջ շարադրությունը ևս մեկ անգամ, բայց՝ իտալերեն: Ահա՛ այն,— Վոլֆգանգը բացեց տետրն ու մեկնեց հորը: Նրա այտերը հուզմունքից շիկնել էին:

— Ինչպե՞ս,— ասաց հայրը զարմացած,— ես միայն քրոջդ եմ իտալերենի դաս տվել: Դու, ի՞նչ է, կախարդական գավազա՞ն ունես:

— Ո՛չ,— պատասխանեց Վհլֆգանգը,— բայց ես նստած էի այն սենյակում, որտեղ դուք Կորնելիային դաս էիք տալիս: Երբ ես վերջացրի ինձ հանձնարարված դասը, սկսեցի լսել ձեզ և սովորեցի:

Գերմ. թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

# ՓՈԽԱԿԵՐՊՎՈՂ ՎՀՈՒԿԸ

*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

Երբ մեր մերձավորների հետ վարվում ենք այնպես, ինչին որ արժանի են, դրանով ավելի վատն ենք դարձնում նրանց: Իսկ երբ վարվում ենք այնպես, որ կարծես ավելի լավն են, քան իրականում, մենք հարկադրում ենք նրանց իսկապես լավը դառնալ:

Վ. ԳՅՈԹԵ

Երբ Պերիկլեսը մահամերձ էր, նրա մահճի մոտ հավաքված ընկերները կարծելով, թե նա փախճանվել է, կսկիծով թվում էին նրա սխրանքներն ու գեղեցիկ հատկությունները:

— Դուք մոռացաք ամենից կարևորը,— աչքերը հազիվ բացում է մեռնողը,— իմ ողջ կյանքում չեմ վիրավորել ոչ մի աթենացու:

2400 տարի առաջ, նկարագրելով, թե ինչպես պիտի պահի իրեն կիրթ ու դաստիարակված մարդը, Արիստոտելը հատկապես շեշտում է, որ նա «պետք է կգուշանա մարդկանց վշտացնելուց»:

Հեշտ բան է փողկապ կապել ու պատառաքաղ բռնել սովորելը: Բայց չի կարելի դասի պես սերտել մի՛ բան, որ մարդկային հարաբերությունների մեջ կոչվում է տակտ:

Մի դեպքում տակտով մարդը կխուսափի խոսել այնպիսի բանի մասին, որ հաճելի չէ մեկ ուրիշին: Մի այլ դեպքում հաջողակ մարդը չի ցուցադրի իր նախանձելի վիճակը այն մարդկանց ներկայությամբ, ում բախտը չի ժպտացել:

Տակտը՝ ամենից առաջ ուրիշի մասին մտածելու ունակությունն է: Եվ անհամար ու անվերջ են այն իրադրությունները, ուր կարող է արտահայտվել մարդկային այդ գեղեցիկ հատկությունը:

Տակտի հարազատ քույրն էլ պատրաստակամությունն է:

Որևէ մարդու, հաճախ բոլորովին անծանոթ մարդու, ծառայություն մատուցելու պատրաստակամությունը, հետզհետե ավելի ու ավելի, դառնում է մարդկային փոխհարաբերությունների նորմա: Եթե դուք տղամարդ եք և փողոցում հանդիպում եք ճամպրուկի ծանրության տակ կքված մի կնոջ, բնական է, որ մոտենաք ու օգնեք նրան: Ի դեպ, այդպես է վարվել նույնիսկ արդեն տարեց Լև Տոլստոյը: Բնորոշ է և այն, որ երբ նա օգնում է մի կնոջ, վերջինս առանց երկար-բարակ մտածելու մանրադրամով վարձատրում է նրան: Այդ կինը չէր պատկերացնում, թե անծանոթ մարդը «հենց այնպես» կարող է օգնել մեկ ուրիշին: Հաճելի է գիտակցել, որ մեր ժամանակներում նման ծառայություն մատուցած անծանոթ մարդուն չի կարելի փող առաջարկել, առանց նրան վիրավորելու կործության ենթարկվելու: Որևէ մեկին առանց ակնկալության, ուղղակի մարդկային անկեղծ պատրաստակամությամբ օգնելու մեր կյանքի այս բնորոշ գիծն առանձնապես ցայտուն է դառնում, երբ բախվում ենք կապիտալիստական աշխարհի կենցաղի մի շարք հանդամանքներին:

Ամերիկյան մի վեպում, ուր բավական ճշգրիտ վերարտադրված են ժամանակակից Ամերիկայի կենցաղային պատկերները, այսպիսի մի դրվագ կա: Մարդը հենց նոր կորցրել է ընկերոջը և վշտանում է: Նա դիմում է ավտոբուսի տոմսավաճառին և հարցնում, թե չի՞ հիշում, արդյոք, երբ իջավ բաց գույնի կոստյումով բարձրահասակ ուղևորը: Տոմսավաճառը թոթվում է ուսերը: «Այդ ժամանակ ես նրան մի դոլլար տվի և նա հիշեց, որ Ալլանը իջել է երկու կանգառ առաջ»:

Որոնումները շարունակելով և հարցուփորձով անցորդներին և նույնիսկ ոստիկանին դիմելով, հերոսը մի քանի անգամ հարկադրված է լինում վճարել մարդկանց:

Յու. Իկոսմովը իր «Հասակ առնող Ամերիկան» գրքում պատմում է մի դեպք, որ կատարվել է Նյու-Յորքի սովետական արդյունաբերական ցուցահանդեսը գործելու ժամանակ: Մեր ցուցադրած հաստոցներին ու մեքենաներին հիացմունքով նայող մի տղայի մեր ինժեներները թույլ են տալիս սեղմել տպագրող մեքենայի գործարկման կոճակը: Ամեն անգամ, երբ նա սեղմում էր՝ դուրս էին թռչում ցուցահանդեսի այցելուներին ողջույնի խոսքով դիմող քարտեր: Ամեն ինչ հիանալի էր, քանի դեռ չէր հասել ցուցահանդեսը փակելու ժամը: Տղան, որին թույլատրել էին այդ խաղը, ինժեներներից փող է պահանջում:

— Փո՛ղ,— կրկնում էր նա:
— Փո՛ղ: Ես աշխատել եմ ձեզ համար:

Բանից պարզվում է, որ այդ անչափահաս, բայց իր աշխարհի արժանավոր ներկայացուցիչը, մտածել է, որ իր տպագրած քարտերը կարող են պետք գալ ինժեներներին, ուստի և ինքը ծառայություն է մատուցել նրանց: Եվ քանի որ նրա պատկերացմամբ մարդը մարդու համար ձրիաբար



ոչինչ չպետք է անի, առանց քաշվելու փող է պահանջել:

Մենք կարող ենք փողոցում մոտենալ որևէ անծանոթ մարդու և սիգարետ խնդրել: Սիգարետը վերցնելուց և շնորհակալություն հայտնելուց հետո, մենք վստահ ենք, որ հարցը փակված է:

Կան, սակայն, երկրներ, ուր մարդը, երբ գլանակ է վերցնում նույնիսկ իր ամենալավ ընկերոջից, իսկույն մանրադրամ է տալիս, դրանով հատուցելով նրան պատճառած վնասը: Ըստ որում, երկուսն էլ, կարող են շատ հարուստ լինել: Դա դրությունը չի փոխում: Ձրիաբար ոչինչ չի արվում, ամեն մի ծառայություն պետք է դրամով հատուցվի:

Այս թվացյալ մանրուքները պատահական չեն: Փոքրի մեջ արտացոլվում է մեծը: Մարդու և նրա շրջապատի փոխհարաբերության ծայրահեղ տարբերությունը բխում է երկու տարբեր՝ կապիտալիստական և սոցիալիստական հասարակարգերի ծայրահեղ տարբերությունից:

Մի անգամ, Պոկրովսկի գավառի խուլ վայրերից մեկում, Չեխովը զրույցի է բռնվում տեղի լրագրողներից մեկի հետ: Մարդկանց հանդեպ ունեցած իրեն հատուկ հետաքրքրությամբ ու բարյացակամությամբ, Չեխովը հարցնում է, թե նա ամսական որքա՞ն է ստանում այդ զբաղմունքի համար: Պարզվում է, որ շատ քիչ: Լրագրողն, ըստ էության, մշտապես կարիքի մեջ էր:

Հետո Չեխովը վերադառնում է Մոսկվա, շարունակում է աշխատել «Տափաստանի» պատմվածքի վրա, ընդարձակ նամակագրություն է վարում, գրքերի շարվածքներն է սրբագրում և այլն, բայց բոլոր այդ աշխատանքների, հոգսերի ու առօրյա գործերի մեջ, մի քանի ամիս անց նա մի նամակ է ուղարկում լրագրողին: «Սիրելի Ալեքսանդր Միխայլովիչ, — գրում է Չեխովը, — ձեզ համար հնարավորություն է ստեղծվել աշխատելու «Պետերբուրգսկայա գազետա»-ում: Եթե համաձայն եք...»

Չեխովը սովորություն ուներ որևէ մեկի անհաջողության կամ անախորժ վիճակի մասին լսելուն պես, հարցնել.

— Որևէ բանով չի՞ կարելի օգնել նրան:

«Չեխովի համար մեծագույն բավականություն էր օգնել ուրիշներին, և նա միշտ ինչ-որ մեկի համար ինչ-որ բան անում էր», — գրել է նրա ժամանակակիցը:

Մեծ գրող Չեխովը, որի անունը թնդում էր Ռուսաստանով մեկ, սիրով ծառայություն էր մատուցում, ամենահամեստ, թվում է, թե ամենաաննկատելի մարդկանց:

Հատկանշալի է այն հրճվանքը, որ ապրում էր նա այդ անելիս: Դա ուրիշներին հրճվանք պատճառող մարդու հրճվանք էր:

Մի անգամ Գորկին պատահաբար իմանում է, որ Մ. Իսակովսկին, այն ժամանակ երիտասարդ, սկսնակ և քչերին հայտնի մի բանաստեղծ, երկար ժա-



մանակ Մոսկվայում ապարդյուն որոնում է բժիշկների հանձնարարած ակնոցը: Գորկին խնդրում է իր մոտ թողնել բժշկի տված թուղթը, և շուտով Իսակովսկին ստանում է այնքա՜ն ցանկալի ակնոցները, որ Գորկու խնդրանքով պատվիրել էին արտասահմանում: Այդ սիրալիրությունը խորապես հուզում է բանաստեղծին: «Թվում է, թե Գորկին, — գրում է Իսակովսկին, — որ իր ուսերին կրում էր հսկայական աշխատանքի բեռը, գործ էր ունենում իրեն դիմող հազարավոր մարդկանց հետ և, բացի այդ ամենից, ինքը ևս հիվանդ, պարտավոր չէր ամեն ինչ հիշել: Բայց նա հիշում էր ամեն ինչի մասին, այդ, թվում նաև՝ իմ աչքերի: Այսպիսին էր Գորկին»:

Մեր շրջապատում գտնվող շատ մարդիկ աչքի են ընկնում այս սքանչելի հատկությամբ՝ պատրաստակամությամբ: Նրանք չեն սպասում, որ իրենց խնդրեն հաճելի բան անել:

Որևէ մեկին հանդիպելիս, պատրաստակամ մարդն անպայման հարց է տալիս իրեն. «Ինչո՞վ կարող եմ հաճելի կամ օգտակար լինել նրան»:

Թող այդ ձայնը ձեր հոգու մեջ էլ հնչի, ընթերցո՛ղ:

Կա մի հին հեքիաթ, որ, հավանաբար, բոլորդ էլ լսել եք մանուկ հասակում: Հեքիաթը պատմում է, թե ինչպես հետապնդումից փրկվելու համար, չար կախարդը մերթ ձկան, մերթ թռչունի, մերթ էլ գազանի կերպարանք է ստանում: Վերջապես մի բուռ հատիկ է դառնում ու ցրվում գետնին: Այդ ժամանակ քաջի ոգին դառնում է աքաղաղ ու կտցում բոլորը, բացի մի հատիկից, որ աննկատելի մի տեղ էր գլորվել և մոռացվել:

Երբեմն կարելի է մտածել, որ անցյալը, փոխակերպվող փուկի նման, անընդհատ փոխում է իր դեմքն ու կերպարանքը, աշխատելով փրկվել կործանումից, որ հետամտում է նրան: Այդ փոխակերպվող չար ուժը դառնում է մի բուռ հատիկ: Նա ճկուն է ու կենսունակ: Այդ հատիկներից որևէ մեկն ընկնում է մարդու հոգու մեջ ու չարության ծիլեր արձակում... Որովհետև անցյալը չի ուզում մեռնել: Բայց կռվում ջախջախված խավար ու դաժան անցյալը այժմ թաքնվում է մարդկային հոգեբանության հեռավոր ծալքերում, որպեսզի հանկարծ երևա մերթ եսամոլի դեմքով, մերթ նախանձի հեգնական ժպիտով, մերթ էլ ուղղակի անպատկառությամբ ու ստորությամբ:

Ահա թե ինչու պայքարը բազմադեմ անցյալի դեմ ավարտված չէ:

Այդ պայքարը յուրաքանչյուր մարդ սկսում է ինքն իր հետ: Եվ ոչ մի բուլդոզեր արմատախիլ չի անի այսպես կոչված «անցյալի մնացուկները» մարդու հոգուց, եթե մարդն ինքը չօգնի դրան: Միայն իր անձի հանդեպ ակտիվ վերաբերմունքը մարդուն կարող է դարձնել ավելի լավ, ավելի ազնիվ ու մաքուր: Անողոք վերաբերմունքը այն ամենի դեմ, ինչ թշնամի է մեզ, անհաշտ վերաբերմունքը դաժանության, կոպտության, մարդկանց հանդեպ ունեցած անհարգալից վերաբերմունքի դեմ՝ սկսվում է հենց մեզնից:

*Թարգմ. Ս. ԱՑՈՒՆՑԻ*

# ՄԱՆԳԱՂԱԹԵՎ (ԾԻԾԱՌ, ՄԱՔԱԼՈՒԿ)

Մանգաղաթևը նմանություններ ունի ծիծեռնակի հետ, բայց դրանք արտաքին նմանություններ են: Ծիծեռնակները պատկանում են ճնճղուկների մեծ կարգին, իսկ ծիծառ-մանգաղաթևը երկարաթևների կարգին, ճեռագռավների (կամ փառագռավների) ենթակարգին: Նա փոքրիկ կոլիբրիի հետ կազմում է առանձին ընտանիք:

Մանգաղաթևը նույնպես սրածայր, բայց լայն և շատ երկար թևեր ունի, քան ծիծեռնակը, պոչը շատ քիչ է ճեղքված, մինչդեռ ծիծեռնակինը մկրատաձև է: Ծիծեռնակը փայլող ածխի նման սև է, իսկ մանգաղաթևը թուխ գույնի է, կտուցը՝ շատ կարճ, քիչ կեռ, բերանի ճեղքը՝ լայն, գլուխը՝ տափակ, աչիկները՝ պուշ-պուշ՝ ծիծեռնակի նման, բայց կուրծքը գորշ է: Սակայն սրանց միջև եղած գլխավոր տարբերությունն այն է, որ ծիծեռնակը, բոլոր թռչունների նման, կարող է կանգնել և քայլել գետնին, նստել ծառի ճյուղին կամ լարի վրա, իսկ մանգաղաթևը չի կարող, որովհետև նրա բոլոր չորս, շատ սուր և շատ կարճ ճանկերը առաջ են ցցված: Մյուս բոլոր թռչունների նման սա այսպես կոչված ետևի «բութ» ճանկը չունի, որ կարողանա դրանով ամուր բռնել ճյուղ կամ լար: Բայց նա իր առաջընթաց ճանկերով կարող է ուղիղ կախվել նույնիսկ քարե պատից, ժայռից, ծառից, ճնճղուկի բույնը հափշտակելու համար նրա գլուխը մաշկազերծ անել, իսկ երկարուկ կլոր բան բռնել կամ գետնին նստել, քայլել չի կարող: Մանգաղաթևին երբեմն տեսնում են ընկած դաշտում կամ քաղաքի փողոցում, բռնում են՝ կարծելով դեռ թռչել չիմացող ձագ է: Բայց բավական է բռիդ մեջ բաց թողնես, իսկույն կսուրա դեպի երկինք: Պատահաբար գետին ընկնելիս, ավելի ճիշտ գետնին դիպչելիս լայն թևերը փռվում են և արգելում վեր բարձրանալ, որին խանգարում են և կարճ ոտքերն ու ճանկերը: Եթե մարդ չօգնի, ապա գետին ընկնելը նրա մահն է, եթե մի որևէ փոքր բարձունքի չհասնի սողալով: Այդպես է, որովհետև 18—22 սմ երկարություն ունի, իսկ թևերի բացվածքը 42—56 սմ է:

Այդ է պատճառը, որ մանգաղաթև-ծիծառը կարծես դատապարտված է ցերեկները երկար ժամանակ օդում սուրալու, իսկ գիշերները հանգչելու բնի մեջ: Բնի համար նրանք օգտագործում են շենքերի պատերի, ժայռերի, ծառերի ճեղքերը, խոռոչները, փչակները: Ճանկերով, կտուցով հարմարեցնում են դրանք իրենց կարիքներին: Այդ ճեղք-բները «կահավորում են» չոր չոփերով, փետուրներով, լաթի կտորներով, խոտի ցողուններով: Մայր մանգաղաթևը մեզ մոտ մայիսի առաջին կեսին 2—3 ձու է ածում (երբեմն նույնիսկ 4) և թուխս նստում (Ռուսաստանում և Եվրոպայում՝ մոտ 2 շաբաթ ուշ): 18—19-րդ օրում ձվից դուրս են գալիս ձագերը: Ծնողները նրանց կերակրում են մոծակներով, մժղուկներով: Կերակրում են մինչև հուլիսի կեսը: Այնուհետև սկսում է նրանց ծղրտոցով լի, հատկապես արևամուտից հետո, ձագերին որսի ու թռիչքի սովորեցնող աշխույժ խաղաթռիչքները: Այս շրջանը տևում է շուրջ 3 շաբաթ: Օգոստոսի 5—10-ը, երբ Երևանի վրա և Արարատյան դաշտում խիստ պակասում է մանգաղաթևերի սնունդը, նրանք 3—4 օրում, ամենից շատ մեկ շաբաթվա ընթացքում, չվում են դեպի Աֆրիկյան ցամաք, դեպի Հնդկաստան, ավելի շատ՝ Փենջաբի ավազան:



Մանգաղաթևերը պատկանում են ամենաօգտակար թռչունների շարքին, անտառների, այգիների, արտերի, դաշտերի, այլև մարդկանց պահակ-բարեկամների շարքին, ինչպես սարյակը, դեղնափորիկ-երաշտահավիկը, ճանճորսիկը, փայտփորիկը, գիշերները՝ բուն, թռչող մուկ՝ չղջիկը: Բուն մկներ է ոչնչացնում, չղջիկը՝ մոծակներ, միջատներ: Մանգաղաթևն ու չղջիկը կարծես ամենօրյա էստաֆետի են դուրս գալիս: Երբ մութն ընկնում է ու չղջիկը դուրս է գալիս իր ցերեկային թաքստոցից, մանգաղաթևը մտնում է իր բույնը՝ հանգիստ առնելու: Եթե դեղնափորիկ-երաշտահավիկը (синица) մեկ օրում իր քաշից ավելի միջատ է բռնում, ապա մանգաղաթևը, որ բոլոր թռչուններից ամենից երկար է լինում օդում՝ շատ արագաթռիչներից մեկն է, օրական կատարում է շուրջ 1000կմ թռիչք, պետք է որ իր սեփական քաշի մոտ կրկնակի չափով սնունդ որսա, որպեսզի ծախսված էներգիան վերականգնի:

Մանգաղաթևերը Երևան և Արարատյան դաշտ են գալիս ապրիլ ամսվա առաջին շաբաթվա մեջ, հատկապես ապրիլի 6—8-ին, ծառերի ծաղկման օրերին: Նախապես գալիս է փոքրիկ հետախուզական մի խումբ, մոտ 100 հատից բաղկացած: Ցրտերի և սննդի պակասության հանդիպելու դեպքում այս հետախուզական խումբը երբեմն 2—3 օրով ետ է փախչում և նորից վերադառնում: Հուլիսի 2-րդ կեսից արդեն Երևանի օդային ավազանում երամներով սուրում են 7—8 հազար մանգաղաթև:

Ցավալի է, որ մեզ մոտ տարեցտարի պակասում է այդ շատ օգտակար թռչնակի կենսական տարածությունը: Քաղաքի բուռն շինարարության ընթացքում, հին շենքերի հետ ավերվում են մանգաղաթևերի բները: Նրանք իրենց բների համար օգտագործում են





# ԱՆՁԱՎԱՅԻՆ ԱՐՋ



ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Շատ հնում մեր երկրում ապրում էր արջերի մի տեսակ, որին գիտնականները **քարանձավային արջ** են կոչել: Դա փղից խոշոր վիթխարի մի գազան էր և օժտված էր ահարկու ուժով: Ոսկորների չափերից երևում է, որ նա մինչև 4 մետր բարձրություն է ունեցել: Այնպես որ ներկայիս կովկասյան ամենախոշոր արջը քարանձավային արջի քոթոթի չափ է: Այդ գազանի ոսկորները 1928 թվականի մայիսին գտնվել են Լենինականի մոտերքում՝ մամոնտի, գիգանտ եղջերվի և նախնադարյան ցուլի ոսկորների հետ միասին, ուստի և մասնագետների համար դժվար չէր որոշել, թե Երկրի պատմության որ դարաշրջանում է մեզ մոտ եղել անձավային արջ: Եվ ահա հնէաբան Լևոն Ավագյանը, Լենինականում գտնված ոսկորները ուսումնասիրելով՝ եկավ այն եզրակացության, որ դրանք ապրել են այսպես կոչված **մինդել-ռիսսի** և մասամբ էլ **մինդելյան** դարերում: Դրանք ներկայիս երկրաբանական դարաշրջանի վաղ և միջին շրջաններն են: Դժվար է ճշգրիտ ասել, թե անձավային արջը քանի հազար տարի առաջ է ապրելիս եղել մեր բնության մեջ: Այնքան միայն կասենք, որ ներկայիս դարաշրջանը, որի մեջ ապրում ենք մենք և որը կոչվում է **չորրորդական**, մոտ մեկ միլիոն տարեկան է: Իսկ մինդել-ռիսսյան ժամանակի վերջը մեզնից հեռու է առնվազն 100.000 տարով:

Մեր երկրի հետագա սառցակալումների ժամանակ ոչնչացան տաք կլիմային սովոր կենդանիները՝ փղերը, ռնգեղջյուրները, մամոնտները: Վերացավ նաև անձավային արջը:

Ասենք նաև այն, որ այն ժամանակ կար նախամարդը և նա շարունակ պատերազմի մեջ էր այդ գազանի հետ: Ինչպե՞ս, ինչո՞ւ, չէ՞ որ իր հասարակ զենքերով՝ քարե կացնով ու մահակով այն վիթխարի գազանի դեմ գնալ, նշանակում է՝ գնալ դեպի կործանում: Բայց միևնույն է, ուզեր-չուզեր մարդը անխուսափելիորեն պիտի ընդհարվեր այդ գազանի հետ՝ կացարանի համար: Բանն այն է, որ բնության մեջ եղած ամենաապահով ու հարմար կացարանները քարանձավներն էին, որոնց մեջ և բնակվում էին արջերը: Հարկավոր էր նրանց դուրս քշել և տիրանալ քարանձավներին: Եվ մեր նախնիք այդ բանն անում էին կրակի օգնությամբ: Հենց որ արջը դուրս էր գալիս անձավից ու գնում որսի, մարդիկ մտնում էին անձավն ու խարույկ վառում այնտեղ: Վերադառնում էր արջը ու տեսնում, որ իր բնակարանը գրավել են երկոտանի արարածներ, որոնց գիտեր, որոնցից չէր վախենում, բայց թեժ բոցերն ու կծու ծուխը վախեցնում էին նրան: Ու հեռանում էր ՝դժգոհ՝ թքոտելով ու մրթմրթալով...

Բայց այն ժամանակ մարդը կա՞ր, կրակ ունե՞ր: Այո՛, հայ գիտնականները (Սարդարյանը և ուրիշները) հաստատել են, որ մեր երկրում, շուրջ կես միլիոն տարի առաջ, մարդանման կապիկը մարդ էր դարձել, քարե գործիքներ պատրաստելու «արհեստանոցներ» ուներ և, օրինակ, Թալինի շրջանի Արտին լեռան ստորոտի օբսիդիանի հանքերում պատրաստում էր կացին, դանակ, տեգի ու նետի ծայրեր, կտրիչներ և այլն: Ուներ նաև կրակ, որի մոխիրը մինչև օրս էլ կարելի է տեսնել այդ բացօթյա հանքերում, «արհեստանոցներում» և քարանձավներում:

Աստիճանաբար մարդն ուժեղացավ իր խելքով, բանականությամբ, զենքերով, մեր երկրի անձավներից վերջնականապես դուրս քշեց գազաններին և տեր դարձավ ապահով ու տաք կացարանների:

*բնական, պատրաստի ճեղքերը, հին շենքերի պատերը, օդանցքները: Իրենք անճարակ են բույն հյուսելու գործում: Ստիպված կռվի են մտնում ճնճղուկների հետ և հափշտակում նրանց ոչ այնքան հարմար բները: Նոր շենքերը ճնճղուկների բների համար նույնպես հարմար չեն: Տանիքի եզրերի թիթեղի տակ բույն դնելու դեպքում, կատուները վնասում են նրանց ձագերին:*

*Հարկավոր է օգնել մեր բարեկամներին:*

*Այս մասին պետք է մտածեն և՛ քաղաքային ու շրջանային սովետները, և՛ շինարարական կազմակերպությունները, և՛ տարեց քաղաքացիները, և՛, վերջապես, դպրոցականները:*

*Կարելի է, օրինակ, նորակառույց շենքերն ավարտելիս վերջին հարկերի տանիքի և քիվերի տակ 30—35 սմ խորությամբ, 16—17 սմ լայնությամբ և նույնքան բարձրությամբ ճեղքեր թողնել, իրարից մոտ երկու մետր հեռավորության վրա, եթե, իհարկե, շենքի ամրությանը չեն խանգարի դրանք: Միաժամանակ սարյակի բնի չափսերով, բայց տափակ տախտակե բներ պատրաստել մանգաղաթևերի համար ու ամրացնել պատերին 5 մետրից ոչ ցածր՝ կատուների թափանցումից ապահով տեղ:*

*Սա մի հանրօգուտ աշխատանք է, ոչ միայն բնության պահպանության համար, այլև մեր օդային ավազանի և շրջապատի առողջության ու մաքրության համար:*

*Մ. Ս. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

# ԲՈՒՍԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ ՀՐԱՇՔՆԵՐԻՑ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանական գիտությունների դոկտոր

Որոշ բույսեր շարժվելու ընդունակություն ունեն: Ճիշտ է, նրանք կենդանիների նման չեն կարող տեղից-տեղ տեղափոխվել, սակայն կարող են միջատներ բռնել, կերակրվել դրանցով, ձեռք տալու դեպքում կծկել տերևները, լույսի ազդեցության տակ զանազան շարժումներ գործել և այլն:

Պատմենք այդպիսի երկու բույսերի, ինչպես նաև բուսական աշխարհի նույնքան հետաքրքրաշարժ մի քանի այլ ներկայացուցիչների մասին:

## ԺԱՆՃՈՐՍ ՑՈՂԻԿԸ

Այս միջատակեր բույսը աճում է ճահճուտ վայրերում: Հանդիպում է նաև Հայաստանում: Տերևների վերին մասը թակարդի ձև ունի և ծածկված է խիտ մազմզուկներով: Երբ դրանց վրա որևէ միջատ է կանգնում, ապա տերևի փեղկերը ակնթարթորեն փակվում են, «բանտարկելով» իրենց զոհին: Որքան ավելի է անհանգստանում բռնված միջատը, դեսուդեն ընկնում, այնքան փեղկերն ավելի ամուր են փակվում:

Այնուհետև տերևի վրա գտնվող բազմաթիվ գեղձերից հատուկ հեղուկ է արտաթորվում, որը քայքայում, տարրալուծում է միջատին: Որոշ ժամանակ անց միջատը լրիվ ներծծվում է բույսի կողմից, վերջինիս համար ծառայելով որպես սնունդ: Երբ միջատը լրիվ «մարսվում է», տերևի ճանճորս փեղկերը բացվում են, սպասելով հաջորդ զոհին:



Միջատակեր շատ բույսեր կան: Դրանց որսող ապարատը տարբեր կառուցվածք ունի: Կան, օրինակ, կճուճաձև տերևներ, որոնց մեջ անուշաբույր հեղուկ է լցված: Հեղուկի բուրմունքից արբեցած միջատը մտնում է կճուճանման տերևի մեջ, որից հետո կափարիչը ամուր փակվում է:

## ՊԱՏԿԱՌՈՒԿ ԿԱՄ ԱՄՈԹԽԱԾ ՄԻՄՈԶԱ



Պատկառուկ

Պատկառուկը արևադարձային բույս է: Նրա տերևները փետրաձև են, կազմված բազմաթիվ մանր տերևիկներից: Բավական է, որ դուք թեկուզ մատների ծայրով հըպվեք պատկառուկի տերևներին, որպեսզի դրանք զույգ-զույգ բարձրանալով ծալվեն ինչպես հանգիստ նստած թիթեռի թևեր: Այնուհետև կախ է ընկնում նաև գլխավոր ցողունը, որը կարծես կոտրված լինի: Որոշ ժամանակ անց, բույսը դարձյալ ընդունում է իր նախկին վիճակը: Որքան բարձր է շրջապատի ջերմությունը, այնքան այս երևույթը ավելի արագ է կատարվում: Ջերմաստանը երբեմն ցուրտ է լինում: Այս դեպքում «մրսած» պատկառուկը աննշան շարժումներ է միայն գործում:

Երբ դուք այցելեք Հայաստանի գիտությունների ակադեմիայի բուսաբանական այգի, ապա խնդրեցեք, որ ձեզ անպայման ցույց տան այդ հետաքրքիր բույսը:

## ՄԱԿԱԲՈՒՅԾ ՕՄԵԼԻԱ



Ճագոմ

Մակաբույծ բույսերը սեփական արմատ չունեն և մեծ մասամբ զուրկ են նաև կանաչ տերևներից: Նման բույսերը ինքնուրույն սնվել չեն կարող և ապրում են այլ բույսերի հաշվին:

Նման մակաբույծներից է ճագոմը, որը հանդիպում է նաև Հայաստանում: Մեծ մասամբ ապրում է տանձենու վրա: Հատկապես լավ է նկատվում ձմռանը,

քանի որ մշտադալար է և տերևաթափ ծառերի վրա պարզորոշ կերպով աչքի է ընկնում:

Ճագումի պտուղները սպիտակ են, հյութալի և կըպչուն: Թռչունները դրանք հաճույքով են ուտում: Պըտուղը ճաշակելուց հետո կտուցին կպած սերմերից ազատվելու համար նրանք կտուցները քսում են ծառի ճյուղերի անհարթ մակերեսին: Ընկնելով կեղևի ճեղքվածքների մեջ, ճագումի սերմերը ծլում են, առաջացնելով նոր բույսեր, որոնց ծծիչները թափանցում են բույսի հյուսվածքների մեջ և սկսում սնվել:



ԲԱՄԲՈՒԿ

Բամբուկը երկրագնդի ամենաարագ աճող բույսերից է: Նրա որոշ տեսակներ մեկ րոպեում տալիս են կես միլիմետր աճ: Դա նշանակում է, որ մեկ օրվա ընթացքում բամբուկի բարձրությունը ավելանում է 72 սանտիմետրով:

Պատմում են, որ մի անգամ ճանապարհորդները բամբուկի տնկարկներում գիշերելու պատրաստություն տեսնելով՝ կտրտել են բույսերը, դրանց տեղում վրան խփել և գիշերել:

Առավոտյան հեռանալով վրանից, նրանք վերադարձել են երեք օր հետո և երկար ժամանակ փնտրել այն վայրը, որտեղ գիշերել էին մի քանի օր առաջ: Սակայն վրանն այդպես էլ չեն գտել: Ճանապարհորդներից մեկը հանկարծ նկատել է վրանի ծվենները գետնից 2—5 մետր բարձրության վրա, բամբուկի երիտասարդ շիվերի ծայրերին: Բանից պարզվում է, ընդամենը 3 օրվա ընթացքում բամբուկը 2—5 մետր աճել էր, իր բազմաթիվ շիվերով քանդելով ու պատառոտելով վրանը:

## ՌՈՏԱՆԳՅԱՆ ԱՐՄԱՎԵՆԻ

Երկրագնդի ամենաերկար բույսը դա ռոտանգ կոչվող մագլցող արմավենին է: Նա իր կպչուն, մագիլանման ցողուններով կառչում է արևադարձային բույսերի ցողուններին և մագլցում մինչև դրանց գագաթները: Ռոտանգի շիվերը իրենց արմատի մոտից կարող են հեռանալ մինչև 300 մետր: Եթե ռոտանգը աճեցվեր 75 հարկանի շենքի պատի տակ, ապա նա իր գեղեցիկ սաղարթով կծածկեր բոլոր հարկերի պատըշգամբներն ու պատերը:

Ռոտանգը աճում է միայն արևադարձային տաք և խոնավ անտառներում: Այն չափազանց լուսասեր է և այդ պատճառով վատ է աճում անգամ մեր ջերմատներում:



# ԲՈԼՈՐ ՃՏԵՐԸ ՍԵՎ ԳՈՒՅՆ ՈՒՆԵԻՆ

**Արարատի շրջանի Արմաշ գյուղի միջնակարգ դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ ՄԻՔԱՅԵԼ ԱԼԱՎԵՐԴՅԱՆԸ խմբագրությանն ուղարկած նամակում գրել է. «...Տատս թուխս էր դրել սև հավը՝ սպիտակ և սև հավերի ձվերի հետ միասին: Դժբախտաբար շատ ձվերից ճուտ դուրս չեկավ: Տատիս ասելով, ցուրտն էր խանգարել, բայց եղածներից բոլորն էլ սև գույն ունեն, միայն մեկն է սպիտակ, այն էլ թևերին սև փետուրներ ունի: Ի՞նչն է դրա գաղտնիքը: Չէ՞ որ բոլորը սև հավի ձվեր չէին»:**

**Միքայելին հետաքրքրող հարցերին պատասխանում է պետհամալսարանի կենսաբանական ֆակուլտետի դասախոս, դոցենտ Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆԸ:**

Սիրելի՛ Միքայել, տատիդ ասածի մեջ ճշմարտություն կա. իրոք՝ ձվի, ավելի ճիշտ, սաղմի զարգացման համար անհրաժեշտ է որոշակի ջերմաստիճան, որի բացակայության դեպքում ճտերը դուրս չեն գալիս: Սակայն, եթե միակ պատճառը այդ լիներ, ապա մյուս ձվերից ևս չպետք է առաջանային ճտեր, որովհետև բոլոր ձվերը գտնվել էին միևնույն ջերմաստիճանի ազդեցության տակ: Ուրեմն տվյալ դեպքում, ջերմաստիճանը չի եղել խանգարողը, ավելի հավանական է այն, որ այդ ձվերը բեղմնավորված չեն եղել.

Իսկ ինչո՞ւ են բոլոր ճտերը, բացի մեկից, ունեցել սև փետուրներ, և այդ մեկն էլ իր մարմնի որոշ մասերում կրել է սև գունավորում, այն դեպքում, երբ թխսամոր տակ դրվել են թե՛ սպիտակ և թե՛ սև հավերի ձվեր:

Չպետք է մոռանալ, որ սերնդի հատկանիշների ձևավորման համար պատասխանատու է ոչ միայն ծնողներից մեկը, ասենք՝ մայրը, այլև՝ հայրը: Տվյալ դեպքում դու պետք է նկատի ես ունեցել միայն մայրական կողմը, այն, որ թխսամոր տակ դրվել են թե՛ սև և թե՛ սպիտակ հավերի ձվերը: Մինչդեռ հայրը նույնպես փոխանցում է երեխաներին իր հատկանիշները:

Ընդհանրապես, սերնդին են փոխանցվում այն հատկանիշները, որոնց զարգացման հնարավորությունները սերունդը ստանում է ժառանգական նյութի հատուկ մասնիկների միջոցով, որոնք կոչվում են գեներ: Գեները գտնվում են ծնողների սեռական բջիջներում, դրանք միաձուլվելով ծնունդ են տալիս նոր անհատին:

Տվյալ դեպքում եթե սև ճտերի մի մասը առաջացել է նույնիսկ սպիտակ հավերի ձվերից, ապա կարելի է ենթադրել, որ նրա հայրը ունեցել է սև փետրավորում:

Չի բացառվում, որ այդ բոլոր ճտերը կարող են առաջացած լինել սև հավի ձվերից: Ճտեր չեն դուրս եկել այն ձվերից, որոնք բեղմնավորված չեն եղել, գուցե դրանք եղել են հենց սպիտակ հավերի ձվերը:

Ինչ վերաբերվում է սև ճտերի հորը, ապա նա կարող էր ունենալ թե՛ սև և թե՛ սպիտակ փետրավորում: Պետք է նկատի ունենալ մի այլ հանգամանք ևս՝ ծնողական մի կողմի հատկանիշների գերիշխումը մյուսի նկատմամբ, տվյալ դեպքում սև փետրավորումը գերիշխել է սպիտակին:

*Արեգակնային համակարգի մոլորակները*

## ՍԱՏՈՒՐՆ

Արեգակնային համակարգի վեցերորդ մոլորակը՝ Սատուռնը պըտըտվում է Արևի շուրջը 1428 միլիոն *կմ* միջին հեռավորությամբ, մի պտույտ կատարելով երկրային 29,46 տարվա ընթացքում: Սատուռնը ամենատափակ մոլորակն է. հասարակածային տրամագիծը՝ 120500 *կմ*, 12000 *կմ* մեծ է բևեռայինից: Յուպիտերի նման, Սատուռնը ևս անհավասարաչափ է պտտվում իր առանցքի շուրջը՝ 10 ժամ 14 րոպե և 10 ժամ 38 րոպե: Մոլորակներից ամենափոքր տեսակարար կշիռը նա ունի: Եթե տիեզերքը մի վիթխարի օվկիանոս լիներ, ասում են գիտնականները, Սատուռնը կլողար ջրի մեջ:

Լուսապատկերային ուսումնասիրության ժամանակ Սատուռնի վրա հայտնաբերեցին մեծ քանակությամբ մեթան և քիչ ամոնիակ: Ռադիոմետրիկ չափումները ցույց տվեցին, որ ջերմաստիճանը հավասար է —150°C:

Աստղադիտակով նայելիս, Սատուռնը չի երևում մանրամասնություններով: Սովորաբար պարզորոշ երևում է հասարակածային գոտին, երբեմն էլ առանձին շերտեր ու բծեր: Ամենանշանավորը, անկասկած, գոտին է, որը հայտնագործեց Գալիլեյը, բայց վատ հեռադիտակի պատճառով, այն համարեց արբանյակ: 1656 թ. հոլանդացի աստղագետ Հյուգենսը ճշտեց Գալիլեյի սխալը: Արեգակնային համակարգի մեջ գոտին միակ գոյացությունն է, որ կազմված է երեք հարթ, իրար միացած օղակներից: Արտաքին



ՆԿԱՐՈՒՄ.— Աշխարհի նախկին չեմպիոն Մ. Բոտվիննիկը Հոկտեմբերյանի № 2 դպրոցի պատանի շախմատիստների հետ: Արտեկում:

# «ՍՊԻՏԱԿ ՆԱՎԱԿ»

*Այսպես է կոչվում Հոկտեմբերյանի շախմատի նորակառույց տունը: Ընդարձակ ու հարմարավետ ակումբում պատանի շախմատիստները մարզիչներ Ստյոպա Եղիազարյանի ու Սուրիկ Ղազարյանի ղեկավարությամբ պարապմունքներ են անցկացնում, վերլուծում միութենական ու միջազգային մրցաշարերի առավել կարևոր պարտիաները, մրցումներ կազմակերպում:*

*Ակումբի առօրյան իսկապես բազմազան է ու բովանդակալից: Կազմակերպվել են հանդիպումներ միջազգային գրոսմայստերներ Պ. Կերեսի, Ռ. Վահանյանի, ՍՍՀՄ երիտասարդական հավաքականի ավագ մարզիչ Ա. Բիխովսկու, Պետրոսյան-Կորչնոյ մրցապայքարի գլխավոր դատավոր Բ. Բարանովի և շախմատի նշանավոր այլ մասնագետների հետ: Ակումբի անդամ, №2 դպրոցի շախմատային ջոկատը չորս տարի անընդմեջ նվաճում է հանրապետության շախմատի չեմպիոնների կոչումը:*

*Շախմատային այդ ջոկատը չորս տարվա ընթացքում (կազմավորվել է 1968 թվականին) չորս անգամ մասնակցել է «Սպիտակ նավակ» համամիութենական պատանեկան մրցավեճերի (որի համար էլ իրենց ակումբը այդ անունով են կոչել): Առաջին անգամ, մոսկովյան մրցաշարում, մեր հանրապետության պատվիրակները բավարարվեցին 10-րդ տեղով: Հաջորդ տարի Օուլովում պայքարը ավելի համառ բնույթ կրեց, բայց հոկտեմբերյանցիները կարողացան Սովետական Միության պատանեկան 18 ուժեղագույն թիմերից 12-ին ետ թողնելով, գրավել 6-րդ հորիզոնականը: Իսկ արտեկյան մրցաշարում չնայած նախկին անդամներից քչերն էին մասնակցում, այնուամենայնիվ № 2 դպրոցի սաները կարողացան գերազանցել նախորդ տարվա արդյունքը և գրավել 5-րդ տեղը: Շախմատիստների ջոկատի անդամներ Աիդա Մնացականյանի, Սուրեն Ապետյանի, Աշոտ Գրիգորյանի, Վահրամ Ներսիսյանի խաղը գեղեցիկ էր ու գրավիչ: Ջոկատի հինգերորդ անդամն ու ամենակրտսերը՝ Լեոնիկ Մանուկյանն էր: Արտեկյան մրցաշարում 14-ամյա պատանին հետաքրքիր անակնկալներ մատուցեց, 9 հնարավորից շահելով 7,5 միավոր: Լեոնիկը Արտեկում, Օուլովում ու Հոկտեմբերյանում միաժամանակյա խաղերի մրցումների ժամանակ խաղացել է աշխարհի նախկին չեմպիոն Բոտվիննիկի, միջազգային կարգի գրոսմայստերներ Ավերբախի, Վահանյանի ու Գիպսլիսի հետ և բոլոր հանդիպումներն ավարտել ոչ ոքի: Սակայն՝ ամենալավ արդյունքի դպրոցական շախմատիստները հասան այս տարի Լիեպայայում անցկացվող մրցումներում: Թիմը համամիութենական եզրափակիչ փուլում պարտության մատնելով Ուկրաինայի, Բելոռուսիայի ու ՌՍՖՍՀ հավաքականներին՝ վաստակեց 13,5 միավոր և գրավեց երկրորդ հորիզոնականը: Այս հոյակապ արդյունքում իրենց արժանի բաժինն ունեն թիմի նոր անդամներ Հասմիկ Բաբայանն ու Սուրեն Սաֆարյանը:*

*Հոկտեմբերյանի շախմատասեր պատանիները նաև ուսման առաջավորներ են: Նույնիսկ վատ սովորողները այդ ակումբի հետ կապվելուց հետո առաջադիմում են, այլապես «Սպիտակ նավակի» դուռը միշտ գոց կլինի նրանց առջև:*

*ՎԱՀԱՆ ՄԽԱԿՅԱՆ*

օղակի լայնությունը 16000 կմ է, միջին օղակինը, որ ամենափայլունն ու հաստն է՝ 26000 կմ: Երրորդ օղակը, նրա միջով անցնում է Սատուռնը, կիսաթափանցիկ է, լայնությունը 18000 կմ է: Օղակի հաստությունը 15 կմ է, իսկ մասսան հավասար է Լուսնի մասսայի մեկ քառորդին: Որոշակի ժամանակահատվածում Սատուռնը այնքան է մոտենում Արևին, որ գոտին երևում է ասեղի հաստությամբ և նույնիսկ հզոր աստղադիտակով դժվար է տեսնել:

Սատուռնը ունի տասը արբանյակ՝ Միմաս, Էնսելադ, Տետիդա, Դիոնա, Ռեա, Տիտան, Հիպերիոն, Յապետ, Ֆեբոս, Յանուս: Տիտանը Արեգակնային համակարգի ամենամեծ արբանյակն է. նրա տրամագիծը 5700 կմ է: Յանուսը հայտնաբերվեց 1967 թ.:

Մայիս, հունիս և հուլիս ամիսներին Սատուռնը չի երևում: Օգոստոսին երևում է արևածագից քիչ առաջ: Աստիճանաբար նրա տեսանելիության ժամանակը երկարում է և դեկտեմբերի կեսերին կարելի է տեսնել ողջ գիշեր:

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՉԷՐ ԴԱՐՁՐԵԼ

*Ռուս նշանավոր բանաստեղծ Ապուխտինը հաճախ էր իր գիրության համար ինքն իրեն ծաղրում:*

*— Քանի որ մի տեղն ինձ համար քիչ է, ես հարավ մեկնելիս գնացքի առաջին կարգի երկու տոմս վերցրի և կուպեում երկու տեղն էլ զբաղեցրի: Տոմսերը ստուգելիս կոնդուկտորը ինձ խնդրեց մի տեղն ազատել:*

*— Ինչո՞ւ, ես երկու տեղի համար եմ վճարել,— բացականչեցի ես և ներկայացրի տոմսերը:*

*— Այո՛,— ասաց կոնդուկտորը,— բայց ձեր տոմսերից մեկի տեղը կողքի կուպեում է:*

## ԽՈՒԱՋՈՐԿՆԵՐ

*Ութ թիվը ութ անգամ օգտագործեք այնպես, որ գումարը ստացվի 1000:*

***

*Գտեք մի թիվ, որը եթե ինքն իրենով բազմապատկենք, արտադրյալին գումարենք նույն թիվը և որի վրա էլ ստացածը բաժանենք ու այդ թիվը հանենք, կստանանք 1:*

***

*Չորս թիվ ունենք, որոնց գումարը 384 է: Գտեք այդ թվերը, նախապես իմանալով. ա) եթե առաջին թվին գումարենք յոթ, բ) երկրորդ թվից հանենք յոթ, գ) երրորդ թիվը բազմապատկենք յոթով, դ) չորրորդ թիվը բաժանենք յոթի վրա, ապա միշտ նույն թիվը կստանանք:*

*Հավաքեց՝ ԳՈՒՐԳԵՆ ԴԱԴՈՒՄՅԱՆԸ*

## ՌԵԲՈՒՍ

Կարդացեք չորս ծաղկի անուն:




*Նկար-առաջարկ՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 9 սեպտեմբեր 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Ողջույն դպրոց — Վ. ԲԱԲԱՅԱՆ . . . . . . . 2
Դոնապահ ճեռին — Մ. ՍԱՐԳՍՅԱՆ . . . . . 3
Հայ այբբենարանը — ԱՎ. ՃՈՒՂՈՒՐՅԱՆ . . . . 4
Արջուկի զարմանքը — Վ. ԿԱՐԵՆՑ . . . . . 5
Ղազախական ՍՍՀ . . . . . . . 6
Գլխարկը — ՈՒ. ՏՈՒՐՄԱՆՋԱՆՈՎ . . . . . . 6
Որն է ճիշտը — Մ. ԱԼԻՄԲԱԵՎ . . . . . . 7
Իմ տունը — Ա. ԴՈՅՍԵՆԲԻԵՎ . . . . . . 7
Մե՞կն է մեծ, թե՞ հարյուրը — Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ . . 8
Խելոքն ու հիմարը (աֆրիկյան հեքիաթ) . . . . 9
Կարմրախայտ որսալու ամենալավ ժամանակը — Կ. ՏՈՆՈՅԱՆ . . . . . . . . . 10
Երգիծական մանրապատումների նմուշներ հայ բանահյուսությունից . . . . . . . . . 12
Ժլատը — Լ. ՍԵՐԳԵԵՎ . . . . . . . . 12
Հոր դասը — Ա. ԿՈԽ . . . . . . . 14
Փոխակերպվող վճռիկը — Ա. ԳՈՐԲՈՎՍԿԻ . . . 15
Մանգաղաքև — Մ. ՄԱՆՈՒԿՅԱՆ . . . . . 17
Անձավային արջ — Վ. ԱՆԱՆՅԱՆ . . . . . 18
Բուսական աշխարհի հրաշքներից — Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ 19
Բոլոր ճտերը սև գույն ունեին . . . . . . 21
Սատուռն . . . . . . . . . . . 21
«Սպիտակ նավակ»— Վ. ՄԵԽԱԿՅԱՆ . . . . 22
Ժամանց . . . . . . . . . . . 23

*Շապիկի առաջին էջը՝ նկ. ՎԱՂԻՆԱԿ ՄԱՆԴԱԿՈՒՆՈՒ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 06729: Պատվեր՝ 1328: Տպաքանակ՝ 73500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 31/VIII 1972 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 կ. ԻՆԴԵՔՍ՝ 77806




# ԳԱՂՏՆԱԳԻՐ «ԿԵՆԴԱՆԻՆԵՐ»

Նկարի վերևի աջ անկյունում գտնվող կապույտ շրջանի համարակալած վանդակներում գծիկների օգնությամբ գրեցեք այստեղ պատկերված 6 կենդանիների անունները: Ճիշտ տեղադրելուց հետո, թվերի օգնությամբ գաղտնագրի ներքևի աջ անկյունում գտնվող կարմիր շրջանի համարակալած վանդակներում կկարդաք 6 ուրիշ կենդանիների անունները:

Որո՞նք են այդ կենդանիները:

*Նկար-առաջարկ՝ ՅՈՒԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ*